ՀԱՅԿԱԿԱՆ ՄԱՏԵՆԱՇԱՐ
ԳԱԼՈՒՍՏ ԿԻՒԼՊԷՆԿԵԱՆ ՀԻՄՆԱՐԿՈՒԹԵԱՆ

ՆԻԿՈՂԱՅՈՍ ԱԴՈՆՑ

# ԵՐԿԵՐ

ՀԻՆԳ ՀԱՏՈՐՈՎ

Դ

## ՔՆՆԱԿԱՆ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ ՀԱՅՈՑ

ԵՊՀ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

ԵՐԵՎԱՆ – 2009

ՀՏԴ 941(479.25)
ԳՄԴ 63.3(2Հ)
Ա 205

**Ադոնց Ն. Գ.**

Ա 205 Երկեր. հատ. Դ., Քննական պատմություն Հայոց/Հրատարակության պատրաստեց Պ. Հ. Հովհաննիսյանը. Եր.: ԵՊՀ հրատ., 2009.- 720 էջ + 2 ներդիր:

*Նիկողայոս Ադոնցի երկերի չորրորդ հատորն ընդգրկում է ականավոր հայագետի «կարապի երգը»՝ մահվան նախօրյակին գրված բազմահատոր «Քննական պատմություն Հայոց»-ի առաջինը՝ «Հայաստանի պատմություն: Ակունքները. X-VI դդ. Ք. ա.» հատորը, ինչպես նաև հայ ժողովրդի կազմավորմանը վերաբերող հոդվածները: Ընթերցողի ուշադրությանն ենք ներկայացնում նաև անավարտ մնացած երկրորդ-երրորդ հատորներից առանձին՝ առավել ամբողջական հատվածներ:*

*Հասցեագրվում է հայագետներին և ընթերցող հանրությանը:*

ԳՄԴ 63.3(2Հ)

ISBN 978-5-8084-1146-3



FUNDAÇÃO CALOUSTE GULBENKIAN

*Խմբագրական հանձնաժողով*

**Հովհաննիսյան Պ. Հ.**
**Մաղոյան Ա. Գ.**
**Ստեփանյան Պ. Գ.**

*Հատորը հրատարակության պատրաստեց*

**Պ. Հ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆԸ**

ՔՆՆԱԿԱՆ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ ՀԱՅՈՑ

(հատվածներ, նյութեր երկրորդ և երրորդ հատորներից)

## IV. ԲՅՈՒԶԱՆԴԱ-ՊԱՐՍԿԱԿԱՆ ՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ԵՎ ՀԱՅԱՍՏԱՆԸ

(V դարի վերջ - VI դարի կես)

(էջ 535)

Գրված է 1940-1941 թվականներին, Բրյուսելում: Ռուսերեն բնագիրը գտնվում է Համազգայինի Բեյրութի գրական պահոցի պրոֆ. Ն. Ադոնցի ֆոնդում (պահարան I, զզրոց Ժ, թղթածրար Ա-8):

Բնագիրն ունի 23×30 սմ մեծություն, գրված է 96 վանդակավոր թերթիկների վրա:

Տպագրվում է Օ. Ա. Վարդազարյանի թարգմանությամբ:

Տպագրության հանգամանքների մասին տե՛ս աստ, էջ 611:

## IV. ԲՅՈՒԶԱՆԴԱ-ՊԱՐՍԿԱԿԱՆ ՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ԵՎ ՀԱՅԱՍՏԱՆԸ

### (V դարի վերջ - VI դարի կես)

### ԲՅՈՒԶԱՆԴԱ-ՊԱՐՍԿԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄԸ

**Սկզբնաղբյուրներ**

The Chronicle of **Joshua the Stylite**, Cambridge, 1882.

**Procopii** De Bello Persico, ed. Bonnae, Русский перевод С. Дестуниса с комментариями Гавриила Дестуниса, СПб., 1876.

The Syriac Chronicle known as that of **Zachariah of Mitylene**, translated into English by F. J. Hamilton, D. D. and E. W. Brooks M. A., London, 1899.

**Eustathius Epiphanius** (Եվագրիոսի III, 37 և Մալալասի § 399), Dindorfii Historici Graeci Minores I, 354-364 և վարը:

**Theophanes**, Chronicon, p. 222-229, B.

(Պրոկոպիոսից և Հեշուից անկախ սկզբնաղբյուրներ):

Հայերի կյանքի բազում կողմերի ճշգրիտ ըմբռնումը՝ տվյալ ժամանակաշրջանում և մատենագրական որոշ հարցերի առնչությամբ, պահանջվում է, ի միջի այլոց, նախևառաջ պարզել այն տիրակալությունների արտաքին քաղաքական իրադարձությունների ընդհանուր ընթացքը, որոնց կազմում էին գտնվում հայերը և որոշել այդ իրադարձությունների նշանակությունը տեղական շահերի տեսակետից: Մեր նպատակն է՝ միայն VI դարի սահմաններում դիտել Բյուզանդիայի և Պարսկաստանի հարատև պայքարը Հայաստանին առավելապես տիրելու համար, որի հետևանքով նույն դարի վերջում Բյուզանդիան ընդարձակեց իր տիրույթները Պարսկահայաստանի տարածքների հաշվին:

Հայկական տարածքները հարևան երկրներից սահմանազատելը, որքան որ դա տարօրինակ թվա, որոշ դժվարություններ է հարուցում այն պատճառով, որ աշխարհագրական և ազգագրական եզրերը միշտ չէ, որ համընկնում էին: Մեր նպատակն է նախևառաջ հաստատել Հայաստանի տարածքային հարաբերությունները հարակից երկրների հետ՝ իր ներքին հասարակական վիճակի, այն է՝ նախարարական կարգի կապակցությամբ,

քանի որ հենց այդ կարգին ենք հանդիպում մեզ հետաքրքրող դարաշրջանում:

Հայաստանն իբրև քաղաքական ամբողջություն այլևս գոյություն չուներ, բայց որպես ռազմական ուժ ունեցող ավատատիրական երկիր այն չէր կորցրել իր նշանակությունը նաև թագավորական իշխանության վերանալուց հետո: Հայաստանը կիսող տերությունների հաշվարկները սխալ գտնվեցին. դրա բաժանումը բնավ չի բերել նրանց ո՛չ խաղաղություն, ո՛չ էլ հանգստություն: Հայաստանը տակավին անհանգստացնում էր նրանց և առիթ էր տալիս մշտական գժտություններին համար: Բյուզանդիայի և Սասանյան հարստության միջև երկարատև պատերազմներն սկսվեցին V դարի վերջից և ձգվեցին VI և VII դարերի ժամանակամիջոցը՝ ընդհուպ մինչև Սասանյանների անկումը: Այդ պարագային Հայաստանը հանդես էր գալիս ոչ որպես չեզոք դիտորդ, ռազմական գործողությունների լոկ բեմահարթակ, այլ, նախարարական կարգի շնորհիվ, բավականաչափ ուժեր ուներ ակտիվ գործողություններ վարելու համար. հաճախ նախարար ազնվատոհմիկները հանդես են եկել իբրև ռազմական ընդհարումների նախաձեռնողներ կամ վճռական ազդեցություն են ունեցել անցուդարձերի ելքի վրա: Ուստիև իրադարձությունները, որ տեղի են ունեցել հայկական տարածքում՝ դրա ճակատագիրը վճռող երկու պետությունների միջև, շատ ավելի սերտ են առնչվում հայ ժողովրդի ներքին կյանքին, քան այն սովորաբար լինում է քաղաքական ենթակայության վիճակի պայմաններում:



Երկու կայսրությունների խաղաղ փոխհարաբերությունները, ամրագրված 422 թ. պայմանագրով, V դարի վերջում սկսեցին սասանվել, ավելի և ավելի վերածվելով ներհակության, և Կավատ I-ի (488-496, 498-531) թագին տիրանալու պահից ակնհայտ թշնամության են վերաճում: Ժամանակակից պատմագիրները տարբեր կերպ են մեկնաբանում այդ իրադարձությունների պատճառները: Վարկածներից մեկի համաձայն, պատերազմը սկսվեց պարսից արքայի մեղքով: Գահաժառանգության համար պարսկական արքունիքում տեղի ունեցած խժդժությունները՝ հեփթաղների միջամտության շնորհիվ ավարտվեցին Կավատի օգտին: Կավատը նրանց օգնությամբ վերադարձրեց թագավորությունը և այդ ծառայության համար պետք է հատուցեր դրամական պարգևներով: Չունենալով պահանջվող գումարը, արքան դիմեց Անաստասիոս կայսրին (491-518) և նրանից պարտքով դրամ խնդրեց: Արքունիքի պաշտոնյաների ազդեցության ներքո կայսրը

մերժեց նրա խնդրանքը: Կայսեր մերձավորներն առաջ էին քաշում այն գաղափարը, թե բնավ ձեռնտու չէ, «որ պարսիկները հռոմեացիների դրամով կարգավորեն հեփթաղների հետ իրենց ունեցած գործերը. ընդհակառակը՝ անմիջական շահ կա՝ պահպանել նրանց միջև եղած անհաշտությունը»[1]:

Մերժումը ստանալով և չունենալով այլ պատճառ Կավատը, ինչպես պնդում է Պրոկոպիոս Կեսարացի պատմագիրը, հռոմայեցիներին պատերազմ է հայտարարում:

[Ըստ այլ վարկածի], Զաքարիա Հռետոր Միտիլենացին կամ, ավելի ճիշտ, իր աշխատության Անանուն շարունակողը չի հիշատակում Կավատի դրամական նման պահանջներ: Իր պատմածի համաձայն, պարսից արքա Պերոզի (459-484) թագավորության և Անաստասիոսի (sic!) կայսրության 13-րդ տարին հոներն իրենց լեռնաշխարհից անցնելով պարսիկների կողմից պաշտպանվող դուռը՝ (1) ներխուժեցին պարսկական տարածք: Իրենց ասպատակումներն արդարացնելու համար նրանք հայտարարեցին զորքով հանդերձ իրենց ընդառաջ դուրս եկած Պերոզին. «Այն ինչ պարսկական պետությունը վճարում է մեզ որպես տուրք, բավական չէ մեզ՝ բարբարոսներիս համար, որոնց Աստված շպրտել է հյուսիս-արևմուտք: Իբրև գիշատիչ գազաններ, մենք ապրում ենք մեր զենքով՝ նետով և սրով, և սնվում ենք զանազան մսերով: Հռոմի կայսրը (2) իր ուղարկած պատվիրակների միջոցով խոստացել է մեզ վճարել [ձեր տված տուրքի] կրկնակին՝ այն դեպքում, եթե մենք խզենք բարեկամական կապերը ձեզ՝ պարսիկներից հետ: Ուստի՝ պատրաստ լինելով [ասպատակելու], մենք եկանք այստեղ առաջարկությամբ՝ կամ դուք վճարելու եք մեզ այնքան, որքան խոստանում են հռոմայեցիները, և այդ դեպքում մենք կհաստատենք մեր [հաշտության] պայմանագիրը ձեզ հետ, կամ, եթե ցանկանում եք՝ մերժեցեք, և այդ դեպքում դուրս եկեք պատերազմի»[2]:

Այնուհետև ծագած պատերազմում պարսիկները պարտվեցին, և Պերոզը կյանքով վճարեց իր ուխտադրուժ վարքի համար: Երբ գահը ժառանգեց Կավատը, պարսկական արքունիքում՝ ազնվականների վերնախավում, ինչպես պնդում է նույն պատմագիրը, բացարձակ վրդովմունք էր իշխում հռոմայեցիների դեմ, որոնք հոների ասպատակությունների և հարուստ երկրի ավերման պատճառ էին համարվում[3]: Նրանց ուխտադրժու-

---

[1] Proc. Caes., De bello Persico, I, 7.

[2] **Zachariah of Mytilene**, VII, cap. 3.

[3] Անդ:

թյան համար վրեժ առնելու նպատակով է Կավատ թագավորը ձեռնարկել այդ արշավանքը:

Հեսու Ստիլիտեսը (Հեշու Սյունակյաց)՝ Կավատի պատերազմի հատուկ պատմագիրը, կանգ է առնում պատերազմին նախորդող իրադարձությունների վրա: Նրա աշխատության մեջ գտնում ենք նաև որոշ պատմական ցուցումներ, որ շատ արժեքավոր են երկու պետությունների փոխհարաբերությունները պարզելու և պատերազմի իրական պատճառները հասկանալու համար:

Ըստ Հեսուի, 363 թ.՝ Հուլիանոսի (361-363) անհաջող արշավանքից հետո, Հովիանոս կայսրը (363-364) զիջել է Մծբինը պարսիկներին ոչ թե ընդմիշտ, այլ միայն 120 տարով, որի լրանալուց հետո այն պետք է վերադարձվեր տերերին (3): Այդ ժամկետը լրացավ Զենոն կայսեր (474-475, 476-491) օրոք՝ 483 թվականին: Պարսիկները, սակայն, հրաժարվեցին վերադարձնել քաղաքը և այդ հանգամանքը սպառնում էր խաղաղության խախտմամբ [թշնամություն էր առաջացնում նրանց միջև]: Բացի այդ, նույն պատմագրի խոսքերով, պարսիկների և հույների միջև կնքվել էր մի պայմանագիր, համաձայն որի նրանք պարտավորվում էին ըստ պահանջի՝ այլ երկրների դեմ պատերազմի դեպքում աջակցել միմյանց՝ կարիք ունեցող կողմի ցանկության համաձայն կամ տրամադրելով 300 ընտիր հաղթանդամ զինված հեծյալ, կամ էլ, որպես փոխհատուցում, մուծելով 300 ստատիր ամեն մարդու համար [300×300=90.000]: Բյուզանդացիները երբեք չեն ունեցել պարսիկների օգնության կարիքը. ինչ վերաբերում է պարսից արքաներին, ապա եղել են դեպքեր, երբ նրանք ուղարկում էին իրենց պատվիրակներին և սեփական կարիքների համար դրամ էին ստանում՝ բայց ոչ որպես տուրք, ինչպես մտածում են ոմանք[1]: Նույն Հեսուի վկայության համաձայն, պարսից Պերոզ արքան քուշան-հոների դեմ պատերազմի կապակցությամբ բազմիցս դրամական աջակցություն էր ստանում հույներից, պատճառաբանելով իր պահանջները նրանով, որ պարսիկները, ջախջախելով հոների ուժերը, վերջիններին զրկում են հռոմեական տարածքները ամայացնելու հնարավորությունից. ընդ որում հիշեցնում էին հռոմեացիներին Հոնորիոսի և Արկադիոսի օրոք՝ 395 թ. տեղի ունեցած հոների ավերիչ արշավանքը հռոմեական մերձավոր-ասիական տիրույթների վրա: Բյուզանդական դրամի շնորհիվ Պերոզին հաջողվեց ետ մղել հոներին և նույնիսկ զավթել նրանց պատկանող շատ գավառներ[2]:

---

[1] **Zachariah of Mytilene**, cap. VIII.

[2] Նույն, cap. IX և X:

Պերոզի զոհվելուց հետո, երբ գահին տիրացավ իր եղբայր Վաղարշը (484-488), հոները վերսկսեցին իրենց արշավանքները: Պարսից արքան դրամի համար կրկին դիմեց Զենոն կայսրին: Այս անգամ, սակայն, Զենոնը, զբաղված լինելով Իլլոսի և Լեոնտիոսի ապստամբության ճնշմամբ, մերժեց, ընդ որում ակնարկում էր, որ պարսիկները մինչ այժմ օգտվում են Մծբին քաղաքի եկամուտներից՝ քաղաք, որը վաղուց ի վեր պետք էր հանձնել հռոմայեցիներին[1]: Վաղարշի ժառանգորդ Կավատը պնդեց իր նախորդի պահանջը և Զենոնի մոտ նվերներով պատվիրակներ ուղարկեց: Աստրիքի Անտիոքում պատվիրակներն իմացան Զենոնի մահվան մասին [491 թ.] և արդեն ուզում էին հետ վերադառնալ, բայց ստացան Կավատի հրամանը շտապով ներկայանալ նոր կայսր Անաստասիոսին և պահանջել սովորական դրամը [customary money]՝ դրամ, որը նրանք վճարում էին ըստ սովորույթի, իսկ մերժման դեպքում պատերազմ հայտարարել[2]: Անաստասիոսը պատասխանեց. «Եթե դրամը պարտքով եք խնդրում, ես այն կուղարկեմ: Բայց եթե դուք պահանջում եք ըստ ավանդույթի՝ որպես պիտոյական, ես չեմ անտեսի հունական զորքը, որ այժմ զբաղված է իսավրացիների դեմ պատերազմով, որպեսզի օգնության հասնեմ պարսիկներին»[3]:

Հետու Ստիլիտեսի աղոտ հիշատակած պայմանագրի մասին մի փոքր ավելի պարզ ասում է Հովհաննես Լիդիացին: Ավելորդ չէր լինի ամբողջությամբ մեջբերել մի հատված, որը վերաբերում է մեզ հետաքրքրող հարցին: «Արևածագի կողմը, այնտեղ, որտեղ սկսվում են նեղ գոտիով Կովկասյան լեռները (4), որ ձգվում (5) են Կասպից ծովիափով, հյուսիսային լանջերում կա անցք, որը բաց է մեզ և պարսիկներին (6) չենթարկվող բարբարոսների համար. նրանք բնակվում են Վրկանի շուրջ և, նրա միջով ներխուժելով, ամայացնում էին պարսկական հողերը, իսկ հյուսիսում՝ հռոմեականները: Քանի դեռ Արտաշատը և այնկողմ գտնվող երկիրը հռոմեական իշխանության ներքո էր, հռոմայեցիները, նստելով այնտեղ, նրանց ետ էին մղում, բայց երբ Հովհանոսի օրոք նրանք հրաժարվեցին ի թիվս այլոց նաև այդ հողերից, պարսիկներն ի վիճակի չեղան պաշտպանելու և՛ իրենց սեփական, և՛ հռոմայեցիներից ետ բերված տարածքները:

---

[1] **Zachariah of Mytilene**, cap. XIX.

[2] Անդ, cap. XXIII.

[3] **I will not neglect the Greek armies, which are sore put to it in the war with the Isaurians and become a helper of the Persians. Je negligerais point mes troupes tres occupies à faire la guerre aux Isauriens pour voler au secours des Perses.**

Երկու Հայաստանները մշտապես տոգորված էին անտանելի տագնապով: Հուլիանոսի օրոք հռոմայեցիների պարտություններից հետո պայմանագիր կնքվեց հռոմեական կողմից պրայտորիաների պրեֆեկտ Սալյուստիոսի և բարձրաստիճան պարսիկների (այնուհետև Հազկերտի) միջև, որ երկու պետությունները համատեղ ջանքերով ամրոցներ կառուցեն հիշյալ անցքին կից և դրա միջով արշավող բարբարոսներին ետ մղելու համար այնտեղ պահակազոր տեղակայեն: Քանի որ հռոմայեցիներն ամբողջովին զբաղված էին հյուսիսում և արևմուտքում ընթացող ծանր պատերազմներով, պարսիկները որպես բարբարոսների արշավանքներից առավել տուժողներ, հարկադրված եղան կառուցել ամրոց, իրենց լեզվով կոչվող Վիրապարախ (Βιραπαράχ) և տեղակայեցին այնտեղ պահակազոր, որն արգելում էր հակառակորդի ներխուժումը:

Այս պատճառաբանությամբ պարսիկները հետզհետե գրոհում էին հռոմայեցիների վրա, ասպատակելով Ասորիքն ու Կապադովկիան, նպատակ ունենալով գոնե կողոպուտի միջոցով ստանալ հռոմայեցիներից իրենց կատարած ծախսերի հատուցումը՝ ծախսեր, որ արվել են ընդհանուր շահերի համար: Հենց այդ ժամանակ Թեոդոսիոս I Մեծն ուղարկեց «առաջին» Սպորակիոսին՝ բանակցություններ վարելու պարսիկների հետ: Նրան հաջողվեց դրամի ուժով և ճառերի զորությամբ՝ առերես ընդունելով պարսիկների արդարացի լինելը, համոզել նրանց հանդարտվել և բարեկամություն պահպանել: Բայց այդ գործը, վերջնականապես չկարգավորված, ձգձգվում էր նոր ու նոր բանավեճերով և բանակցություններով մինչև Անաստասիոս կայսրը, իսկ նրա օրոք Կավատը սկսեց պատերազմը»[1] (7):

Հովհաննես Լիդիացու խոսքերը մեկնաբանության կարիք են զգում: Սպորակիոսի անվան հիշատակումը Թեոդոսիոս I Մեծի օրոք (379-395) ժամանակավրեպ է: Սպորակիոսը՝ Անատոլիոս զորավարի հորեղբայրը, հայտնի պետական գործիչ էր, ապրում էր Թեոդոսիոս II Փոքրի օրոք (408-450) և հյուպատոս էր դարձել 452 թ.: Այդ պատճառով Գ. Ռոուլինսոնը առաջարկում է սրբագրել [Θεοδοσίου] μείζονος որպես μικροῦ[2]: Բայց Հովհաննես Լիդիացին Սպորակիոսին կոչում է ὁ πρῶτος, դրանով իսկ ակնհայտորեն ցանկանալով տարբերակել նրան մի այլ Սպորակիոսից, որն ապրում էր Թեոդոսիոս Փոքրի օրոք: Հնարավոր է, որ, ինչպես կարծում է

[1] **Ioannis Lydi De magistratibus, III, 52, 53.**

[2] **G. Rowlinson, The Seventh *Great* Oriental Monarchy (Sassanian), 1875, p. 353, *note* 2.**

Յո. Մարկվարտը[1], Հովհաննես Լիդիացու օգտագործած աղբյուրում խոսվում է նախ Ստիլիխոնի դեսպանության մասին, որ ուղարկվել էր 384 թ. Թեոդոսիոս I-ը Պարսկաստան՝ Հայաստանի բաժանման մասին բանակցություններ վարելու նպատակով, բայց Հովհաննեսը շփոթել էր այն այլ, ավելի ուշ՝ 441 թ. Թեոդոսիոս II-ի և Հազկերտ II-ի միջև կայացած բանակցությունների հետ, որոնք, թերևս, վարում էր Սպորակիոսը: Հեսուի և Հովհաննեսի համահունչ վկայությունները լիովին հաստատում են երկու պետությունների միջև եղած պայմանագրի փաստը՝ պայմանագիր, որի համաձայն լեռնային ցեղերի արշավանքներից սահմանամերձ ռազմավարական կետ-անցքերը պետք է պաշտպանվեին համատեղ ուժերով: Վեճ է հարուցում լոկ այն, թե որ ժամանակին է վերաբերում այդ պայմանագիրը, խոսքն արդյո՞ք այն խաղաղության պայմանների մասին էր, որ հաստատվել էին, ինչպես Հովհաննես Լիդիացին է հավաստում, Հովիանոսի կողմից 363 թվականին:

Այս նույն հարցը թերևս բարձրացվել էր 384 թ. Հայաստանի բաժանման ժամանակ, դրանից մի փոքր առաջ տեղի ունեցած հոների ներխուժման առիթով[2]: Հովհաննես Լիդիացու ակնարկները հիմք են տալիս ենթադրելու, որ Թեոդոսիոսի և Հազկերտի օրոք հարցը նորից է վերանայվել, ըստ որում հռոմայեցիները պարտավորվել են պարսիկների հետ կիսել ամրությունների շինարարության և պաշտպանության ծախսերը՝ մարդկանցով կամ դրամով: Հենց այսպիսի համաձայնության վրա էին անշուշտ հենվում այն դրամական պահանջները, որոնք, ինչպես հայտնի է հավաստի աղբյուրներից, մշտապես ներկայացնում էին բյուզանդական կայսրերին պարսից արքաները: Պրիսկոս Պանիացու համաձայն, 464 թ. Լևոն I Թրակացի կայսրին (457-478) ներկայացան պարսից արքայի պատվիրակները, պահանջելով, որ հռոմայեցիները մասնակցեն Կասպից դռան մոտ գտնվող Յուրոպահակ (8) ամրոցի պաշտպանությանը[3]՝ կամ դրա դիմաց դրամ վճարեն, կամ կայազոր ուղարկեն: Նույն պահանջը կրկնվեց երկու տարի անց՝ 466 թ., երբ սարազուրները՝ ակատիրների և այլ ցեղերի դաշնակցությամբ ասպատակեցին Պարսկաստանը: Պարսկական պատվիրակությունը կրկին

[1] J. Markwart, Ērānšahr nach der Geographie des Ps.-Moses Xorenac'i, Abhandlungen der Akademie der Wissenschaft in Göttingen, Phil.-Hist. Klasse, N. F. 3, Berlin, 1901, p. 104f.

[2] Շմոնի և Գուրիասի (Գոռի) վարքում, Acta Sanctorum, t. VI, Nov. p. 342; J. Markwart, Eranšahr, p. 104.

[3] Prisci Fragmenta, Historici Graeci Minores, ed. L. Dindorfius, vol. I, Lipsiae, 1870, Fr. 31.

պահանջեց, «որ իրենց տրվեն կամ դրամ, կամ մարդիկ Յուրոիպաախ (Յուրոպահակ) ամրոցը պաշտպանելու համար»[1]:

Պրիսկոսն ասում է, որ պարսկական պատվիրակությունը հաջողության չի հասել, բայց կան նաև տեղեկություններ, որ հույները երբեմն բավարարում էին նրանց պահանջները: Ստիլիտեսը[2] վկայում է, որ «պարսիկները պատվիրակներ էին ուղարկում և դրամ ստանում իրենց կարիքների համար» և հիշատակում մի մասնավոր դեպք, երբ Զենոն կայսրը դրամ ուղարկեց և ազատեց հոներից գերեվարված պարսից արքա Պերոզին[3]: Մի այլ դեպքում Զենոնի մոտ պատվիրակություն ժամանեց Վաղարշից՝ դրամի պահանջով, բայց մերժում ստացավ[4]:

Կայսրերի՝ պարսից արքաների խնդրանքների մերթ հարգելը, մերթ մերժելը բխում էր այդ իսկ պայմանագրի անորոշ բնույթից: Ըստ Ստիլիտեսի, պայմանագրի համաձայն երկու կողմերը պետք է օգնեին միմյանց որևէ *այլ ժողովրդի* դեմ պատերազմի դեպքում: Ըստ Պրիսկոսի, հույները պարտավորվել են աջակցել պարսիկներին Յուրոիպաախից այն կողմ ապրող ժողովուրդների դեմ պայքարում: Համաձայն Հովհաննես Լիդիացու, պայմանագիրը վերաբերում էր Վիրապարախ դռանը: Հռոմեական տիրույթները սահմանակից էին միայն Կովկասի դռան (Դարյալի կիրճին): Եվ որքան հռոմեացիներին անհրաժեշտ էր դրանք պաշտպանել քոչվորների արշավանքներից, նույնքան անտարբեր էին նրանք երկրորդ՝ պարսկական տարածքին հայող Կասպից դռան ճակատագրի նկատմամբ: Իսկ ինչ վերաբերում էր հոներին, ապա բյուզանդացիներին ուղղակի ձեռնտու էր խրախուսել գժտությունները նրանց և պարսիկների միջև, այլ ոչ թե օգնել վերջիններին:

Պրիսկոսը հայտնում է, որ պարսիկները, խնդրելով դրամական օգնություն հոն-կիդարիտների դեմ, բացատրում էին, որ հռոմայեցիները՝ պարսիկների հաղթանակ տանելու դեպքում կստանան այն օգուտը, որ հոներին «թույլ չի տրվի անցնել հռոմեական տիրույթները»[5]: Բայց Պրիսկոսը իրավացի չէ. Կասպից ծովից այնկողմ ապրող կիդարիտներից հռոմայեցիներին ոչ մի վտանգ չէր սպառնում, և եթե ինքը պարսիկներին այդպիսի պատճառաբանություն է վերագրում, ապա միայն նրանց պա-

---

[1] **Priscus**, Fr. 37.

[2] **Joshua the Stylite**, cap. VIII.

[3] **Ibid.**, cap. X.

[4] **Նույնը**, cap. XVIII.

[5] **Priscus**, Fr. 31.

հանջների օրինականությունը խարխլելու նպատակով: Եթե պարսկական պատվիրակությունը խոսում էր հոների դեմ պատերազմի մասին՝ Ցուռոհպահակի պաշտպանության խնդրի կապակցությամբ, ապա պարզ է, որ նրա պահանջը հենվում էր կայսրերի՝ Կովկասի դռան վերաբերյալ ունեցած պայմանագրային պարտավորությունների, և ոչ կիդարիտների՝ պարսիկներին հնազանդվելուց բխող օգնուտի վրա: Քանի որ բյուզանդացիները միտումնավոր կամ իրենցից անկախ հանգամանքների բերումով չէին կատարել հիշյալ պարտավորությունները, և պաշտպանության ամբողջ ծանրությունը ընկել էր պարսիկների ուսերին, այս վերջինները, կիդարիտների դեմ պատերազմելու համար դրամի կարիքը զգալով, պահանջում էին այն գումարը, որն իրենք ծախսել են Դուռը պաշտպանելու համար: Բյուզանդացիները երբեք կտրականապես չէին մերժել պարսիկների խնդրանքները, այլ տալիս էին քիչ թե շատ անորոշ ու խուսափողական պատասխաններ և փորձում էին դեսպանների միջոցով մի կերպ կարգավորել խնդիրը: Այսպես ձգձգվում էր մինչև Կավատը, որը որոշեց պաշտպանել իր իրավունքը զենքի միջոցով: Հարցի մեր այս հանգամանալից քննարկումից հետո չի կարելի չհամաձայնել Էդ. Գիբբոնին, որ «պատերազմի դրդապատճառը կամ պատրվակն Անաստասիոսի անարդարային ժլատությունն էր»[1]:

**Կավատի արշավանքը**

502 թ. օգոստոսին Կավատը, գլխավորելով զորքը, շարժվեց դեպի հյուսիս, անցավ բյուզանդացիների տարածքը և կանգնեց Հայաստանում Թեոդոսուպոլսի (Կարինի) առջև: Մի քանի օրում նա, առանց որևէ դիմադրության հանդիպելու, գրավեց քաղաքը: Այդ տարածքի Կոստանդին անունով կառավարիչը Անաստասիոսի հանդեպ տածած թշնամանքի պատճառով դավաճանեց նրան և հանձնեց քաղաքը: Տիրանալով այդ երկրի պատվար քաղաքին, պարսիկները կողոպտեցին այն և այրեցին, ավերեցին նաև մերձակա գյուղերը և գերեվարեցին բնակիչներին: Կավատը Կոստանդինին ընդունեց պարսկական ծառայության և նշանակեց նրան նույն քաղաքի պարսկական կայազորի պետ[2]:

Այն կարևոր նշանակությունը, որ հյուսիսում ուներ Թեոդոսուպոլիսը, հարավում ուներ Ամիդը: Մինչ այն պաշարելը Կավատը որոշեց գրավել

---

[1] The unkind parsimony of Anastasius was the motive or pretence of a Roman war (Ed. Gibbon. The Decline and Fall of the Roman Empire, vol. 2, chap. 40).

[2] Joshua the Stylite, cap. XLVIII; Procop., De Aedif. III, 5

քաղաքն արևելքից և հյուսիսից պաշտպանող ամրոցները՝ Մարտիրոպոլիսն և Անգղը (Ինգիլենե): Մարտիրոպոլիսը՝ 5 ինքնավար հայկական սատրապություններից մեկի՝ Ծոփքի (Սոֆանենեի) գլխավոր քաղաքը, ընկած էր սահմանազատող գետի՝ Նիմֆիոսի ափին, Ամիդից մեկ օրվա ճանապարհի հեռավորությամբ: Այդ ժամանակ սատրապը ոմն Թեոդորոսն էր (հայկական իշխաններից էր, քանի որ այդ պաշտոնում նշանակվում էին միայն հայ իշխանները): Երբ պարսկական զորքը մոտեցավ քաղաքին, բնակիչները, համոզված լինելով, որ նույնիսկ կարճ ժամանակով քաղաքը հնարավոր չէ պաշտպանել, սատրապական համազգեստ հագած (9) Թեոդորոսի հետ ներկայացան Կավատին հնազանդության առաջարկով, հանձնեցին նրան քաղաքը և վճարեցին երկու տարվա պետական տուրքը: Պարսից արքան արժանեց բնակիչներին, չպատճառելով նրանց ոչ մի վնաս, քաղաքի կառավարման մեջ ոչինչ չփոխեց և վստահելով սատրապ Թեոդորոսին՝ թողեց նրան իր պաշտոնում, հանձնելով նրան սատրապական իշխանության նշանները[1]: [Ստիլիտեսի խոսքերից այն մասին, որ Կավատը ավերեց Անգղը և Ծոփքը[2] կարելի է եզրակացնել, որ Անգղ ամրոցը նույնպես գրավված էր պարսիկների կողմից]:

**[Ամիդի պաշարումը, 502 թ. հոկտեմբեր]**

Այնուհետև պարսկական զորքը գրոհեց Ամիդի վրա և պաշարեց այն նույն 502 թ. հոկտեմբերի 5-ին: Ամբողջ երեք ամիս պարսիկները պաշարում էին քաղաքը և ոչ մի կերպ չէին կարողանում վերցնել. քաղաքի բնակիչները, թեև պատրաստ չէին ռազմական ընդհարման, արիությամբ ետ էին մղում քաղաքին տիրանալու Կավատի բոլոր փորձերը: Պարսից արքան, արդեն հուսահատված, ուզում էր դադարեցնել պաշարումը, երբ նպաստավոր մի դեպք օգնեց նրանց: Քաղաքի աշտարակներից մեկի մոտակայքում նրանք հայտնաբերեցին խճաքարերով անփութությամբ ծածկված մի հին առվի հուն, որը տանում էր պարսպից ներս[3]: Այդ գյուտի շնորհիվ պարսիկներին հաջողվեց ներխուժել քաղաք և զենքի ուժով գրավել այն 503 թ. հունվարի 10-ին:

Կավատը դաժան պատիժների ենթարկեց քաղաքի բնակիչներին՝ նրանց համառ դիմադրության համար: Այնուհետև քաղաքում թողնելով

---

[1] **Procop.**, De Aedif. III, 2.

[2] The Chronicle of **Joshua the Stylite**, cap. L.

[3] Տե՛ս **Procop.**, B. P. I, 7:

հազար, իսկ ըստ այլ տեղեկությունների՝ երեք հազար մարդ որպես պահակազոր՝ պարսիկ Գլոնեսի հրամանատարությամբ, Կավատը զորքով և գերիներով վերադարձավ իր երկիրը[1]: Լուր ստանալով Կավատի կողմից Ամիդի պաշարման մասին, Անաստասիոսը զգալի ռազմական ուժեր է ուղարկում չորս զորավարների՝ Արեոբինդոսի, որը Օլիբրիոս կեսարի փեսան և Թեոդոսիոս II-ի նույնանուն զորավարի թոռն էր և այդ ժամանակ զբաղեցնում էր Արևելքի զորահրամանատարի (magister militum per Orientem) պաշտոնը, պալատական գնդերի հրամանատար (milites palatini) Կելերի, ինչպես և մայրաքաղաքի զորքերի հրամանատարների (magistri militum in praesenti)՝ փոյուզացի Պատրիկիոսի և Անաստասիոս կայսեր եղբորորդի Հյուպատիոսի առաջնորդությամբ:

Անաստասիոսն ըստ երևույթին պարսիկներից վճռական գործողություններ չէր սպասում: Լուր ստանալով Կավատի գրոհի մասին, նա ուղարկում է Հռուփինոս պատրիկին դրամով հանդերձ, հանձնարարելով այն տալ պարսից արքային այն դեպքում, եթե նա դեռևս սահմանի վրա է գտնվում և չի հասցրել ներխուժել հռոմեական տարածք: Բայց Հռուփինոսը, ժամանելով Կապադովկիայի Կեսարիա, իմանում է Անգղ, Ծոփք, Հայաստան և Արաբիա կատարած Կավատի ավերիչ արշավանքների մասին: Նա դրամը թողնում է Կեսարիայում և մեկնում Կավատի մոտ՝ համոզելու նրան ստանալ կայսեր ուղարկած գումարը և վերադառնալ իր տարածքը: Կավատը մերժեց կայսերական պատվիրակի առաջարկությունը և կալանավորեց նրան: Այն ժամանակ, երբ գլխավոր ուժերը պաշարում էին Ամիդը, պարսկական զորքի մի ջոկատ ուղղվեց Կոստանդինե կամ Տելլա՝ պարսիկների դաշնակից՝ Խիրայի արաբների թագավոր Նաամանի հետ համատեղ գործողությունների համար. Նաամանն էլ Կավատի հրամանով ընթանում էր դեպի Խառան (Հելլենոպոլիս): Օլիմպիոսը (կամ ըստ Թեոփանեսի՝ Ալիպիոսը), Տելլայի դուքսը, և Եվգենիոսը, Մելիտինեի դուքսը, ժամանելով այնտեղ, 502 թ. նոյեմբերի 19-ին միացյալ ուժերով դիմավորեցին պարսկական զորաբանակին և ջախջախեցին այն: Բայց շուտով վրա հասավ Նաամանի հրամանատարության ներքո գործող արաբների զորագունդը, ջարդեց դուքսերին և ամայացրեց երկիրը Խառանից մինչև Եդեսիա: Օլիմպիոսը փակվեց Կոնստանտինեում, իսկ Եվգենիոսը, բավարար ուժեր չունենալով պարսկական զորքին դիմադրելու համար, իր ջոկատի հետ նահանջեց հյուսիս, ապա գրոհեց Թեոդոսուպոլսի վրա և գրավեց այն, ոչնչացնելով պարսկական կայազորը:

---

[1] Procop. B. P. 1, 7. Stylite, cap. LIII.

Ամիդը գրավելուց հետո Կավատը ազատ է արձակում Հոռւփինոսին, որպեսզի նա ամեն ինչի մասին զեկուցի կայսրին (503 թ., ապրիլ): Միևնույն ժամանակ Կավատը կրկին պատվիրակներ է ուղարկում Անաստասիոսի մոտ, պահանջելով կամ իրեն դրամ ուղարկել, կամ դուրս գալ պատերազմի: Ի պատասխան՝ Անաստասիոսը մի մեծ զորք զինեց և Արեոբինդոսի, Պատրիկիոսի և Հյուպատիոսի հրամանատարությամբ ուղարկեց ռազմի դաշտը: Արեոբինդոսը, որն այդ ժամանակ magister militum per Orientem պաշտոնում էր, գլխավորելով 12 հազար մարդու, ճամբարեց սահմանային գծի վրա՝ Դարայի և Ամուդինի միջև, Մծբինի դիմաց: Պատրիկիոսը և Հյուպատիոսը, իրենց տրամադրության ներքո ունենալով հիմնական՝ 40 հազարանոց բանակը, շարժվեցին դեպի Ամիդ: Ապիոնը՝ կայսրից միանգամայն վստահված կարևոր մի անձնավորություն, որը նշանակվել էր բանակի մատակարար, հանգրվանեց Եդեսիայում: Քանի որ Արեոբինդոսի ուժերն աննշան էին, Կավատը Սինգարայի լեռներից, որտեղ նա հավաքել էր իր զորքը Ամիդը գրավելուց հետո, ուղարկեց նրա դեմ 20 հազար զինվոր: Արեոբինդոսը հաջողությամբ ետ էր մղում նրանց գրոհները, բայց հակառակորդին օգնության հասան նոր ուժեր՝ պարսիկներից, հոներից և արաբներից կազմված [մի բանակ], Թեոդոսուպոլսի կայազորի նախկին պետ՝ Կոստանդինի հրամանատարությամբ, որը վտարվել էր այդտեղից Մելիտենեի դուքս Եվգենիոսի կողմից: Արեոբինդոսը զուր էր խնդրում Պատրիկիոսի և Հյուպատիոսի աջակցությունը: Նրանք շարունակում էին մնալ Ամիդի մոտակայքում, և Արեոբինդոսը, ի վիճակի չլինելով դիմակայել թշնամու գերազանցող ուժերին, թողնում է իր ճամբարը և փրկվում Տելլայում, իսկ այնուհետև նահանջում Եդեսիա:

Տեղեկանալով Արեոբինդոսի ճակատագրին, Պատրիկիոսն ու Հյուպատիոսը զորքը դուրս բերեցին ճամբարներից և շարժվեցին Կավատին ընդառաջ: Թեոդորոս Հայը, Ծոփքի սատրապը, որը Կավատի Մարտիրոպոլսից հեռանալուց հետո լքեց քաղաքը և եկավ Ամիդի մերձակայքում գտնվող բյուզանդական ճամբարը, լազ Փարեսմանեսի հետ միասին Ամիդի շրջակայքում պարսիկներից մի հոտ ոչխար է հափշտակում և թաքնվում: Պարսիկները՝ թվով 400 ընտիր մարտիկներ դուրս են գալիս քաղաքից անասունը ետ բերելու նպատակով. Թեոդորոսի և Փարեսմանեսի ջոկատը, դուրս գալով դարանից, հարձակվեց նրանց վրա, բոլորին կոտորեց և գերեց նրանց հրամանատար մարզպանին: Քանի որ վերջինս խոստացել էր նրանց հանձնել Ամիդը, Պատրիկիոսն ու Հյուպատիոսը շտապ վերադարձան Ամիդ: Բայց մարզպանը չկատարեց իր խոստումը, քանի որ քաղաքի

բնակիչները նրան չենթարկվեցին, ուստի և խաչ հանվեց բյուզանդական զորավարների հրամանով:

**503 թ., օգոստոս:** Պարսկական բանակը, ստանալով հոներից, կադիշցիներից և հայերից կազմված օգնական ուժեր, սկսեց գրոհել Օպաղնա քաղաքի ուղղությամբ: Պատրիկիոսը շարժվեց նրանց ընդառաջ, բայց, չդիմանալով պարսիկների անակնկալ գրոհին, գլխովին ջախջախվեց և փախավ Եփրատից այն կողմ գտնվող Սամոսատ քաղաքը: Պարսիկները տիրացան Սիֆրիոն (Աշպարին) ամրոցին և ուղղվեցին Արեոբինդոսի դեմ դեպի Եդեսիա: Ճանապարհին՝ Տելլա քաղաքը վերցնելու անհաջող փորձից հետո 503 թ. սեպտեմբերին Կավատը հասավ Եդեսիա և ճամբարեց քաղաքի դիմաց:

Սկզբից պարսից արքան բանակցություններ սկսեց Արեոբինդոսի հետ և ցանկություն հայտնեց խաղաղության պայմանագիր կնքել նրա հետ, եթե բյուզանդացիները վճարեն 10 հազար լիտր ոսկի և պայմանագրով պարտավորվեն տարեկան մուծել սովորական գումարը: Արեոբինդոսը առաջարկեց նրան միայն 7 հազար լիտր: Կավատը չհամաձայնեց և անցավ պաշարման: Առաջին՝ անհաջող գրոհից հետո Կավատը վերսկսեց բանակցությունները, խոստանալով դադարեցնել պաշարումը 2000 լիտր ոսկու դիմաց, բայց հաջողության չհասավ:

Այդ ժամանակ մայրաքաղաքից նոր զորքեր ժամանեցին պալատական գնդերի հրամանատար (palatini milites) Կելերի ղեկավարությամբ: Կելերը ձմեռեց Մաբբուգում՝ Եփրատի ափին, և գարնանը շարժվեց դեպի Րիշ-այն և այնտեղից գնաց Ամիդ (504 թ. մարտ): Պատրիկիոսը, ձմեռելով Մելիտենեում, նույնպես ուղևորվեց Ամիդ: Կավատը, տեղեկացված լինելով Կելերի ժամանելու մասին, դադարեց Եդեսիայի պաշարումը և հեռացավ Բեթ-Արմայե (Beth-Armayye), բայց, տեղեկանալով Ամիդի մոտ հակառակորդի զորքերի կուտակման մասին, այնտեղ օգնություն է ուղարկում 10 հազար մարդ:

Բյուզանդական զորահրամանատարները, ի վիճակի չլինելով գրավել Ամիդ քաղաքը, ասպատակում էին պարսկական տարածքը և, կողոպտելով երկիրը և կոտորելով բնակիչներին, զգալի վնաս էին հասցնում: Կելերը, անցնելով Նիմֆիոս գետը, հարձակվեց պարսիկներին հպատակ Արզանենե (Աղձնիք) հայկական նահանգի վրա և ամայացրեց այն[1]: Արեոբինդոսն իր զորաջոկատով ներխուժեց Պարսկահայաստան, կոտորեց մինչև 10.000 հայ և պարսիկ բնակիչներ, գերեվարեց 30.000 կին և երեխա, կողոպտեց և

[1] **Procop.**, I, 8.

այրեց բազում գյուղեր և հետ դառնալով Ամիդ, իր հետ բերեց 120 հազար գլուխ մանր և խոշոր եղջերավոր անասուն: Պարսիկներին հպատակ հայ Մուշլեկը (Մուշեղ, Մուշեղակ) իր զորքով հանդերձ հանձնվեց և անցավ հռոմայեցիների կողմը[1]: Անունից դատելով, Մուշեղը Մամիկոնյանների տոհմական Տարոն գավառի տիրակալ իշխաններից էր՝ գավառ, որ սահմանակից էր ռազմական գործողությունների թատերաբեմին: Նրա՝ բյուզանդացիների կողմն անցնելը, ըստ երևույթին, Արեոբինդոսի արշավանքի արդյունքն էր[2]:

Ամիդը պաշարող հռոմեական զորքերի ավերիչ ասպատակությունները չափազանց ծանր էին պարսիկների համար: Կավատը 20 հազար զորքով նրանց դեմ ուղարկեց astabid Bāwi-ին (բոյ - եկան= *Βόας*), հանձնարարելով բարեպատեհ առիթի դեպքում խաղաղ բանակցություններ սկսել հակառակորդի հետ: Պարսիկները գիտակցում էին, որ Ամիդը չի կարող երկար պաշտպանվել՝ պարենի ոչ բավարար լինելու պատճառով: Բյուզանդացիները ևս հակված էին խաղաղության: Կորցնելով զինված ուժով քաղաքը գրավելու հույսը, բյուզանդացիները տանջվում էին երկարատև պաշարումից, որ կապված էր ձմեռային եղանակի բոլոր դժվարությունների հետ: Երկու կողմերի միջև սկսվեցին բանակցություններ՝ պարսիկները հազար լիտր ոսկու դիմաց համաձայնեցին վերադարձնել իրենց կողմից գրավված Ամիդը: Հակառակորդի խարդախությունների պատճառով պաշարման ժամանակ զոհված կայազորի պետ Գլոնեսի որդին ընդունեց դրամը և 505 թ. քաղաքը հանձնեց հռոմայեցիներին[3]: Ամիդը գրավելուց հետո հռոմայեցի զորավարը նահանջեց Տելլա, Ռեշ-այն և Եդեսիա՝ ձմեռելու համար: Հաշտության բանակցությունները դեռ չէին հասել ավարտին, ուստի և հաջորդ՝ 506 թ. գարնանը դրանք վերսկսվեցին Կելերի կող-

---

[1] **Stylite, cap**. 75, 504 թ. հուլիսից հետո:

[2] Հավանաբար Մուշեղը հենց այն նույն քրիստոնյա իշխանն էր, որի խնդրանքով Կավատը, ինչպես հաղորդում է Զաքարիա Հռետորը, 502 թ. Ամիդի գրավմանը հաջորդող կոտորածի ժամանակ խնայեց եկեղեցում ապաստանած 40 մարտիրոսների կյանքը (**Zachariah**, p. 158): Ըստ Զաքարիայի, նա Arran երկրի իշխանն էր, Abul-Faraj-ը նրան անվանում է հայոց իշխան (Gregorii Barhebraei Chronicon Syriacum, ed. P. Bedjan, Paris, 1890, p. 80): Կարծում եմ, որ հնարավոր է Arran-ը դիտել իբրև Մամիկոնյանների տոհմական կալվածքի՝ Տարոնի անվանումը (հմմտ. **Մ. Չամչյան**, Հայոց Պատմություն, II, էջ 234, G-H. Lebeau, Histoire de Bas-Empire, VII, p. 35): Այս դեպքում Մուշեղի անցումը հռոմայեցիների կողմը պետք է թվագրել Ամիդի հռոմայեցիների կողմից գրավումից հետո [ընկած ժամանակահատվածով], քանի որ Կավատը չէր անսա դավաճանի խնդրանքը (10):

[3] **Procop.**, I, 9.

մից: Բայց Bāwi-ի մահվան պատճառով բանակցությունները որոշ ժամանակով հետաձգվեցին:

Bāwi-ի տեղը զբաղեցրած պարսկական զորապետ Ասպեբեդեսը շարունակեց բանակցությունները Կելերի հետ և զինադադար կնքեց յոթ տարի ժամանակով: Խաղաղության պայմանագրի պայմանները հստակ չեն: Համենայն դեպս, պատմագիրներն այդ մասին չունեն և ոչ մի ստույգ տեղեկություն: Հայտնի է միայն, որ բյուզանդացիները որպես Ամիդի փրկագին որոշակի գումար վճարեցին[1], որը ոմանք գնահատում էին 1000 լիտր ոսկի[2], իսկ ոմանք՝ 1100[3] կամ 30 տաղանդ[4]: Յուրապարհակ անցքի մասին կարևոր հարցը, որի պատրվակով և սկսվեց պատերազմը, մնացել է առկախ: Հոնհեփթաղների դեմ այդ ժամանակ շարունակվող պատերազմի պատճառով պարսիկները շտապեցին զինադադար կնքել, բայց չկար և ոչ մի կասկած, որ այդ պատերազմն ավարտելուց հետո իսկույն, առաջին իսկ բարեպատեհ պահից կրկին բարձրացվելու է կովկասյան անցքերի պաշտպանության հին խնդիրը:

Այդ անցքերից մեկը, որը հին հեղինակները կոչում էին Կասպից դուռ, այժմ՝ Դարիալի կիրճը, գտնվում էր այդտեղ բնակվող հոների տիրակալ Ամբազուկի ձեռքին: Վերջինս, կապված լինելով Անաստասիոսի հետ բարեկամական կապերով, մերձենալով մահվան, դրամի դիմաց Անաստասիոսին առաջարկում է դուռն ու ամրոցը: Կայսրը, լիովին հասկանալով, թե ինչպիսի դժվարություններ կհարուցի այդպիսի ամայի և բշնամական ցեղերով բնակեցված երկրում զորք պահելը, խելամտորեն մերժեց Ամբազուկի առաջարկությունը: Չառամյալ Ամբազուկի վախճանվելուց հետո պարսից արքան, իմանալով հռոմայեցիների հետ նրա զաղտնի հարաբերությունների մասին, վտարում է նրա որդիներին և գրավում դուռը:

Զինադադարը կնքելուց հետո[5] Անաստասիոսը հոգում էր կայսրության արևելյան սահմանները ամրապնդելու մասին, նկատի ունենալով պարսիկների դեմ պատերազմի հնարավոր վերսկսումը: Նա ամուր պարիսպով շրջապատեց Մծբինից ոչ հեռու գտնվող մինչ այդ աննշան Դարա ավանը, այն դարձրեց քաղաք և կոչեց իր անունով՝ Անաստասիուպոլիս: Նույն նկատառումով ամրացվել էր նաև Թեոդոսուպոլիսը Հայաստանում: Երկու

---

[1] **Marcell.**, Chron., p. 178.

[2] **Procop.**, I, 9.

[3] **Zacharia**, VII, 5, p. 163.

[4] **Teophanes**, p. 127.

[5] **Procop.**, I, 10, իսկ ըստ Հեսուի, զինադադար կնքելուց հետո 505/6 թվականին:

այդ սահմանամերձ կետերը ռազմավարական կարևոր դիրքեր գրավելով հարավում և հյուսիսում, պետք է ծառայեին որպես պատվար և պարսիկների դեմ ռազմական գործողությունների հենակետ: Պարսիկները փորձում էին խանգարել հույների շինարարական աշխատանքները, բայց հաջողության չհասան, քանի որ նրանց ուժերը դեռ շարունակում էին գործել հոների դեմ: Հենց որ վերջիններիս դեմ պատերազմն ավարտվեց, Կավատը պատվիրակություն ուղարկեց Կոստանդնուպոլիս և բողոքեց սահմանային գծի վրա ամրությունների կառուցման կապակցությամբ (422 թ. Թեոդոսիոսի և Հազկերտի օրոք կնքված) պայմանագրի հիման վրա՝ պայմանագիր, համաձայն որի երկու կողմերին խստիվ արգելված էր սահմանամերձ տարածքում նոր ամրություններ կառուցել[1]: Անաստասիոս կայսրը, պարսիկների բողոքին ի պատասխան, ուղարկեց մի զգալի գումար և փորձում էր մերթ սպառնալիքներով, մերթ մեղմ խոսքերով հանդարտացնել նրանց:

Դրանից քիչ անց Անաստասիոսը վախճանվեց և գահ բարձրացավ Հուստինոս I (518-527): Կավատը պատրաստ էր հանդուրժել հռոմեացիների թույլ տված անօրենությունները և խաղաղ հարաբերություններ պահպանել, միայն թե Հուստինոսը պետք է խոստանար Կավատի մահվանից հետո գահ բարձրացնել իր կրտսեր որդուն՝ Խոսրովին: Կավատը ուներ մի քանի որդի: Դրանցից ավագը՝ Կաոսը, օրինական գահաժառանգն էր, բայց չէր վաստակել հոր հաճությունը. երկրորդ որդին՝ Ջամը, որպես մի աչքից զրկված, համաձայն օրենքի, որն արգելում էր ֆիզիկական արատ ունեցող անձանց դառնալ թագավոր, իրավունք չուներ տիրանալու գահին[2]: Կավատը շատ էր սիրում Ասպեբեդի քրոջից ծնված իր կրտսեր որդուն՝ Խոսրովին: Գահը նրա համար ապահովելու նպատակով Կավատը դիմում է Հուստինոսին, առաջարկելով նրան որդեգրել Խոսրովին և իր մահվանից հետո նրան հանձնել գերագույն իշխանությունը. փոխարենը պարսից արքան համաձայնում է հռոմեացիներին ներել նրանց անարդար զանցանքները:

Կավատի առաջարկությունները գոհունակությամբ ընդունեցին Հուստինոսն ու իր զարմիկ Հուստինիանոսը: Բայց Պրոկղոս քվեստորը, որը

---

[1] Պրոկոպիոսը վերագրում է պայմանագիրը 422 թ. (**Procop.**, B. P. I, 10, I, 2, De aedif. II, 1): Բայց ավելի հավանական է, որ այն կնքվել է Պրոկոպիոսի հիշատակած Անատոլիոսի կողմից, Հազկերտի օրոք՝ 442 թ., տե՛ս G. **Rowlinson** p. 302:

[2] Ըստ Թեոփանեսի, նա ուներ չորրորդ որդի, **Φθασυάρσας**, որը մազդակյանների թեկնածուն էր և զոհվեց այդ աղանդի ջախջախման ժամանակ 529 թ. (տե՛ս **Մալալաս**): Ըստ ալ-Տաբարիի, Կավատն ուներ 10 որդի, II, p. 148:

հայտնի էր իր անշահախնդիր ծառայությամբ և կայսեր վստահված անձերից էր, յուրովի էր ընկալում և մեկնաբանում պարսից արքայի մտադրությունը. նա կասկածում էր նրան հիտորեն քողարկված՝ հռոմեական տերությունը զավթելու ծրագրում. բանն այն է, որ Հուստինոսը զավակներ չուներ և, Պրոկղոսի կարծիքով, Խոսրովի որդեգրման դեպքում գահը՝ գահաժառանգական իրավունքով պետք է անցներ նրան[1]: Քվեստորը նախազգուշացնում էր Հուստինոսին պարսկական արքունիքի խարդավանքներից և իր խորհրդով նրան հետ պահեց Կավատի վտանգավոր առաջարկությունն ընդունելուց:

Դրանից հետո երկու տերությունների ներկայացուցիչները հանդիպեցին բուն սահմանին՝ հաշտության դաշնագրի պայմանները հանգամանորեն քննարկելու համար: Հռոմեացիների կողմից ներկայացան Անաստասիոսի զարմիկ Հյուպատիոսը և Պատրիկիոսը՝ magister militum per Orientem, իսկ պարսիկների կողմից Սեոսեսը (Սիյավուշը)՝ խիստ կարևոր և ազդեցիկ պաշտոնյա՝ 'Αδρασταδαραν σαλάνης պաշտոնում[2] և Մեբոդեսը՝ զորքի հրամանատարը[3]: Լիազորվածներին, սակայն, չհաջողվեց վերացնել վիճահարույց կետերը: Ընդ որում, դժվար թե պարսկական արքայազնի որդեգրման հարցն ունենար այն նշանակությունը, որը հակված է նրան վերագրել Պրոկոպիոս պատմագիրը, Պրոկղոսի կանխատեսող սպառնալիքներն ամեն դեպքում չեն կարող հիմնավորված համարվել[4]:

Բանակցությունների անհաջող ավարտի գլխավոր պատճառներն ավելի շատ կարևոր քաղաքական խնդիրներն էին: Յուրապահակի և Ամբազուկից ետ վերցված Կովկասյան դռան հարցը, շինարարական աշխատանքները

---

[1] Հռոմեական իրավունքի համաձայն, որդեգիրն անցնում էր որդեգրողի իշխանության տակ և օգտվում էր ժառանգական իրավունքներից, տե՛ս **Proc.**, p. 130:

[2] 'Αδρασταδαραν σαλάνης - բարձրագույն պաշտոն է, որ սկսվեց Սեոսեսի հետ և նրա հետ էլ անհետացավ. նրանից հետո Պարսկաստանում այս կոչումով պաշտոնյա այլևս չի եղել (**Proc.** I, 11):

[3] Μεβόδης - P. A. de Lagarde (Gessammelte Abhandlungen, S. 185) առաջարկեց փոխել Μοβήδης ձևով: Μοβήδης-ը ունեցել է [«մագիստրոսի իշխանություն»] τὴν μαγίστρου ἀρχήν. եթե «մագիստրոս» հասկանալ իբրև «զորագլուխ», ապա Պ. Լագարդի սրբագրումը դժվարհասկանալի է, և Մեբոդեսը պետք է դիտել իբրև անձնանուն: Հնարավոր է, սակայն, որ «մագիստրոս» այստեղ նշանակում է պարզապես «պետ», կրոնի ներկայացուցիչ՝ պայմանագրերի կնքման հաճախ ներկա էին մոբեդները (մոգպետները):

Ըստ Սեն-Մարտենի, արևելյան աղբյուրներում Mehbond = ἀρχιμάγειρος, հողանոցի պետ, գլխավոր հողարար (**Lebeau**, VIII, 169):

[4] [cf. Gibbon?].

Թեոդոսուպոլիսում և Դարայում՝ հակառակ պայմանագրային որոշման, և, վերջապես, հռոմայեցիների կողմից Լազիկայի նորադեպ բռնագրավումը՝ ահա տարաձայնության այն կետերը, որոնց լուծելուց հետո միայն կարելի էր ակնկալել հաստատուն խաղաղություն[1]: Պարսիկների ներկայացուցիչները, երևում է, պնդում էին հատկապես Լազիկայի ազատման անհրաժեշտությունը: Իրականում Կավատի՝ Խոսրովի որդեգրման առաջարկի մերժումը ոչ թե պատճառ էր բանակցությունների անհաջողության, այլ դրա հետևանքն էր: Այսպիսով, քննարկված կետերի վերաբերյալ փոխհամաձայնությունը չկայացավ, և հին իրադրությունը նոր պատերազմով էր սպառնում: Իբերիայի իրադարձությունները արագացրեցին թշնամական գործողությունների սկիզբը:

Իբերները պարսից արքաների ստորականներն էին: Կավատի օրոք նրանց եկիրը ևս մեկ անգամ դարձել է քրիստոնեության և Սասանյան կրոնական բռնապետության դարավոր պայքարի բեմահարթակ: Կավատը որոշել էր ճնշել քրիստոնեական կրոնի ազատությունը և «Գուրգեն թագավորից պահանջում էր, որ նրանք ընդունեին պարսկական ծեսերը՝ այդ թվում նաև չթաղեին մեռյալներին, այլ թողնեին նրանց ի կերակուր շանց և թռչնոց»[2]: Իբերիայի ժողովուրդը, որպես ջերմեռանդ քրիստոնյաներ, որոնք, ըստ Պրոկոպիոսի, «բոլորից լավ էին պահպանում ծեսերը»[3], անցավ Հուստինիանոսի հովանավորության ներքո և խնդրեց նրա աջակցությունը՝ պարսկական բռնության դեմ:

Կայսրը դրամի միջոցով փորձեց համոզել հոներին, որ բնակվում էին Քերսոնեսի և Բոսպորի (Սևաստոպոլի և Կերչի) միջև ընկած տարածքում, օգնության հասնել իբերներին: Բայց դա նրան չհաջողվեց, և նա Լազիկա ուղարկեց Պետրոս զորավարին հոների մի փոքրիկ ջոկատի հետ միասին՝ Գուրգենին օգնելու համար: Այսպիսի աննշան օժանդակությունը թույլ չէր տալիս Իբերիայի թագավորին գործելու այն մեծ ուժի դեմ, որն Իբերիա ուղարկվեց Կավատի կողմից «վարիզ» պաշտոնով պարսիկ Բոես զորավարի հրամանատարությամբ[4]:

---

[1] Բանակցությունների ապարդյունության համար ինչ-որ չափով մեղադրում էին Սեոսեսի և Հյուպատիոսի ներկայացուցիչներին, որոնք, իբր, անձամբ դեմ էին հաշտության: Եթե դա արքունական բամբասանքներից չէ, ապա կարելի է ենթադրել, որ Սեոսեսը պայքարում էր Կավատի երկրորդ որդու՝ Զամի թեկնածության համար, որն իր՝ քաջարի մարտիկի համբավով, բազմաթիվ կողմնակիցներ էր ձեռք բերել արքունիքում (**Proc**. I, 11):

[2] **Proc**., P. I, 12, p. 57.

[3] Անդ:

[4] **Πέρσην, Οὐαρίζην μὲν τὸ ἀξίωμα, Βόην δὲ ὄνομα, Proc., B. P. I, 12, p. 58.**

Գուրգենը կնոջ և երեխաների հետ միասին, որոնցից ավագը կրում էր Պերաճիոս անունը, եղբայրներով և իբերացի ազնվականներով հանդերձ փախավ Լազիկա: Վայրի դժվարանցանելիության շնորհիվ նրան հաջողվեց որոշ ժամանակ մնալ Լազիկայում, սակայն պարսիկների գրոհը ստիպեց նրան թողնել երկիրը և հեռանալ Բյուզանդիա (որտեղ հետ էր կանչվել նաև Պետրոսը): Լազերը, ի վիճակի չլինելով դիմագրավելու պարսիկների հարձակումներին, հրաժարվեցին Իբերիային սահմանամերձ ամրոցների՝ Սկանդայի և Սարապանիսի պաշտպանությունից: Այնտեղ տեղակայված հռոմեական պահակազորը շուտով ստիպված եղավ լքել այս դիրքերը պարենային պաշարների պակասության պատճառով: Պարսկական զորքն անխափան տիրեց ամրոցներին:

Հուստինոս կայսրն իր կողմից երկու բանակ ուղարկեց՝ Հայաստանում և Միջագետքում պարսիկների դեմ գործելու համար: Առաջին բանակը՝ Սիտտասի և Բելիսարիոսի հրամանատարությամբ անակնկալ ասպատակեց Պարսկահայաստանը (Պերսարմենիա), ամայացրեց երկիրը, գերեվարեց բազում բնակիչների և հետ դարձավ: Ավերածությունների թիրախ դարձած Հայաստանի սահմանամերձ շրջանները պատկանում էին ազնվատոհմ Կամսարական իշխաններին: Քիչ անց Սիտտասն ու Բելիսարիոսը կրկին ներխուժեցին Կամսարականների տիրույթները, բայց այս անգամ հակահարված ստացան քաջարի եղբայրներ՝ Նարսեհ և Հրահատ իշխաններից, որոնք, հռոմայեցիներին ջախջախիչ պարտություն հասցնելով ճակատամարտում, ստիպեցին նրանց հետ քաշվել: Այս ճակատամարտը հայտնի է նրանով, որ այստեղ առաջին անգամ հանդես է եկել Բելիսարիոսը, որին մոտ ապագայում վիճակվելու էր դասվել հին դարաշրջանի ամենամեծ զորավարների շարքը:

Հռոմեական մյուս զորքը, որը ներխուժեց Միջագետք, նույնպես հաջողության չի հասել: Դրա զորագլուխը, թրակացի Լիբելարիոսը, պաշտոնանկ եղավ, և նրա փոխարեն նշանակվեց Բելիսարիոսը[1]:

---

[1] **Հուստինոս**, 522-527 թթ.: Իրադարձություններից երեքն էլ վերաբերում են Հուստինոս I-ի թագավորության տարիներին և տեղի են ունեցել մինչև 527 թ.՝ նրա մահվան տարեթիվը: Աղբյուրներում դրանց ժամանակն ավելի ճշգրիտ չի սահմանվում: Առանձին իրադարձություններն այս կամ այն տարեթվին հարմարեցնելու փորձերը, որոնք կատարում են նոր ժամանակի ուսումնասիրողները, հիմնված են լոկ կռահումների վրա: Բելիսարիոսի՝ դեպի Հայաստան արշավանքը, ըստ Մուրալտի, թվագրվում է 522 թ., Նարսեհի և Հրահատի հաղթանակը՝ 523 թվականին: Ըստ Կլինտոնի (?) – 526 թ. (Fasti Rom. I, p. 745):

Դեպքերից քիչ անց գահ բարձրացած Հուստինիանոսի հրամանով Բելիսարիոսը նոր ամրոցներ կառուցեց պարսկական սահմանի վրա՝ Մծբինի առջև, Մինդուոս տեղանքում: Ընդ որում կրկնվեց այն նույն պատմությունը, որը տեղի է ունեցել Դարայի վերակառուցման ժամանակ: Պարսիկները աշխատում էին խափանել աշխատանքները նախ սպառնալիքներով, ապա՝ բռնի ուժով: Չնայած մայրաքաղաքից հասած նոր զորավիգ ուժերին, հռոմայեցիները պարտվեցին և նրանց սկսած շինությունները պարսիկները հիմնահատակ կործանեցին:

[Ամմոդիոսի ճակատամարտը 530 թ.]: Հուստինիանոսը Բելիսարիոսին նշանակեց «արևելյան կողմանց զորավար» (στρατηγὸς τῆς ἕω - magister per Orientem), հրամայելով պարսիկների դեմ պատերազմ վարել: Բելիսարիոսը Դարայում կուտակել էր 25 հազարանոց բանակ: Շուտով երևաց պարսկական բանակը, բաղկացած 40.000 զինվորներից, որը ճամբարեց Ամմոդիոս վայրում՝ Դարայից 20 ասպարեզ հեռավորությամբ: Ընդհանուր հրամանատարն էր Պերոզ պարսիկը՝ Միհրանի ցեղից[1], իսկ առաջնորդներից ամենահայտնիներն էին Պիտիասն ու Վարեսմանը[2]:

Ճակատամարտից առաջ Բելիսարիոսը և նրա օգնական Հերմոգենեսը փորձեցին հաշտության հասնել՝ գրավոր բանակցություններ վարելով պարսիկների հրամանատարի հետ: Խաղաղ առաջարկները, սակայն, մերժվեցին: Պերոզ - Միհրանը հայտարարեց, որ «նա կհավատար նրանց խոսքերին, եթե նրանք հռոմայեցիներ չլինեին, որ հեշտ են խոստանում, բայց չեն կատարում»[3]: Այնուհետև երկու կողմերն էլ սկսեցին պատրաստվել ճակատամարտի: Չնայած թվական գերակշռության[4], պարսիկները պարտություն կրեցին՝ մարտի դաշտում թողնելով 5000 սպանված-

---

[1] **Zachariah of Mytilene**, VII: Μιρράνης τὸ ἀξίωμα (οὕτω γὰρ τὴν ἀρχὴν καλοῦσι Πέρσαι, Περόζης δὲ ὄνομα (**Proc.**, Bella Persica, p. 62): Պրոկոպիոսի՝ Միհրան (mirran = *mihran) բառի իբրև պաշտոն կամ կոչում նշանակողի մեկնաբանումը ճիշտ չէ: Միհրան՝ Պերոզի ցեղանունն է, տե՛ս **F. Justi** [Iranishe Namenbuch, Marburg, 1895], (Malalas **Μηράμ**, Teoph. **Μηράν**):

[2] **Πιτιάξης** և **Βαρεσμάνης**: Առաջին անունը՝ «բդեշխ» է, իսկ երկրորդը՝ **Μαρεσβάνης** = մարզպան. հմմտ. C.-H. Lebeau VIII, 136 n.3: Լեբոն սխալվում է, կարծելով, որ այդ ժամանակ Հայաստանում մարզպանն էր միականի (ἑτερόφθαλμος) Մժեժը:

[3] **Proc.**, I, 14, p. 66.

[4] Ըստ Պրոկոպիոսի, 50.000, ըստ Մալալասի՝ 70.000:

ների, Վարեսմանն զորավարին[1] և հեռացան Մծբին[2]: Ամմոդիոս վայրի հարևանությամբ ճակատամարտը, Դարայի շրջակայքում, եղավ 530 թ., հուլիսին, ինդիկտիոնի 8-ին[3]:

[Սատալայի ճակատամարտը, 530 թ.]: Կավատի՝ Հռոմեական Հայաստան ուղարկած մի այլ բանակի գործողությունները նույնպես հաջողությամբ չպսակվեցին: Բանակը բաղկացած էր պարսիկներին ենթակա հայերից, ալաններին հարևան[4] սունիտներից և 3000 հոն-սավիրներից: Պարսիկ Մերմերոեսի հրամանատարությամբ[5] 30.000-ոց մեծ բանակը շարժվեց դեպի Թեոդոսուպոլիս և, ճամբարելով երեք օրվա հեռավորությամբ (630 ասպարեզ = 100-ից մի փոքր ավել «վերստ»), պատրաստվում էին գրոհի: Այդ ժամանակ Հռոմեական Հայաստանի զորավարը Դորոթեոսն էր՝ խելամիտ և ռազմական գործում փորձառու մի մարդ, իսկ գործող բանակի ընդհանուր հրամանատարը Սիտտասն էր՝ մայրաքաղաքի զորավարներից մեկը և Բելիսարիոսի զինակիցը: Հռոմայեցիները, պարսիկների գրոհի մասին լուրն առնելով, նախապես նրանց ուժերը և դիրքը հետախուզելուց հետո անսպասելիորեն գրոհեցին նրանց ճամբարի վրա և, հասցնելով մեծ կորուստներ, հետ քաշվեցին: Մերմերոեսը, հավաքելով ուժերը, ներխուժեց հռոմեական տարածք և անցավ մինչև Սատալա քա-

---

[1] Ըստ Պրոկոպիոսի, Վարեսմանին հարվածեց հոների առաջնորդը՝ Սունիկան: Մալալասը (p. 453) Սունիկայի սպանած պարսիկ առաջնորդին Սագ է անվանում (ἐν αὐτῇ δὲ τῇ συμβολῇ καὶ ἔξαρχος Περσῶν κατεσφάγη ὀνόματι Σάγος, Σουνίκα τοῦ δουκὸς καὶ ἐξάρχου ʽΡωμαίων εἰς μονομαχίαν αὐτὸν προτρεψαμένου) [«նույն ընդհարման ժամանակ սպանվեց և պարսիկների զորագլուխ <բառացի՝ էքսարքոս> Սագը, Սունիկա առաջնորդի և հռոմայեցի էքսարքոսի կողմից կանչվելով մենամարտի»]: Ակնհայտ է, որ խոսքը միևնույն անձնավորության՝ Վարեսման Սագի մասին է. անտարակույս է, որ **Βαρεσμάνης**-ը՝ **Μαρεσβάνης** բառն է, իսկ այս պաշտոնով օժտված անձնավորությունը Սագն է: Դրանով հաստատվում է Սեն-Մարտենի կռահումը: Ըստ Մալալասի (p. 452) և Թեոփանեսի (I, p. 277), պարսկական զորքի հրամանատարներ էին 1) Միհրանը, 2) պարսից արքայի որդին: Վերը մենք նույնացնում ենք Սագին և Վարեսմանին: Շատ հավանական է, որ Պիտիախս-բդեշխը՝ արքայազներից մեկն էր: Այս դեպքում նա ոչ թե հայկական մարզի բդեշխ է, այլ կադիշցիների, որոնց նա, ինչպես երևում է Պրոկոպիոսից, գլխավորում էր Ամմոդիոսի ճակատամարտում:

[2] Այսպես, համաձայն Մալալասի. ըստ Պրոկոպիոսի, «նրանք չէին ցանկանում նահանջել Դարայից, մինչև Հռուփինոսը՝ Հուստինիանոսի պատվիրակը, չներկայացավ Կավատի առջև, առաջարկելով խաղաղություն» (**Proc.**, I, 16, p. 79 ):

[3] **Malalas**, p. 452.

[4] [**Proc.**, I, 15].

[5] [Ibidem.].

դաքը: Սատալայի մերձակայքում, Օկտաքե գյուղում կանգնած էր հռոմեական զորքը՝ մոտ 15.000 մարդ:

Հաշվի առնելով թշնամու թվական գերակշռությունը, Սիտտասը խուսափում էր անմիջական ճակատամարտից և, հրամայելով Դորոթեոսին դուրս չգալ քաղաքից, ինքը 1000 հոգիանոց փոքր ջոկատով թաքնվեց քաղաքի շրջակա բլուրների ետևում: Երբ պարսիկները սկսեցին գրոհել քաղաքի վրա, Սիտտասի ջոկատը դարանից հարվածեց և նրանց մատնեց կատարյալ խուճապի: Պարսիկները դադարեցրին պաշարումը: Երբ նրանք նահանջում էին, Դորոթեոսը դուրս եկավ քաղաքից և շուտափույթ հարձակվեց նրանց վրա: Պարսիկները հայտնվեցին երկու ջոկատների միջև, մեծ կորուստներ կրեցին և ստիպված եղան լքել հակառակորդի տարածքը և վերադառնալ իրենց սահմանները:

Այդ ժամանակ հռոմայեցիները գրավեցին պարսկական սահմանամերձ Բոլոս ամրոցը և այսպես կոչված Փառանգիոնը, որ հայտնի էր ոսկու հանքով[1]:

Դրանից քիչ առաջ նրանք տիրեցին ճաներին՝ ժողովուրդ, որը մինչ այդ ինքնավարությունից էր օգտվում[2]:

Հուստինիանոսը դժկամությամբ ներքաշվեց պատերազմի մեջ. այդ պատճառով, չնայած որ պարսիկների արշավանքները բարեհաջող ետ են մղվել, նա առաջինն էր ձեռնարկել խաղաղության մասին բանակցությունները: Հռուփինոսը, որը դեռ պատերազմից առաջ էր ժամանել Հիերապոլիս, և հապաղում էր այնտեղ մինչ նոր կարգադրություններ ստանալը, կայսեր հրամանով ներկայացավ Կավատին և, բողոքելով նրա թշնամական գործողությունների անհիմն լինելու համար, առաջարկեց խաղաղությամբ ավարտել գործը: Կավատն էլ, իր հերթին, պատերազմի ամբողջ մեղքը բարդեց հռոմայեցիների վրա, մեղադրելով նրանց պայմանագրի պարտավորվածությունների չկատարման մեջ՝ պարտավորվածություններ, որոնք երկու պետությունները հաստատել են Կապից դռան և սահմանի վրա նոր ամրոցներ կառուցելու առթիվ: Պարսից արքան մերժեց Հռուփինոսի՝ խաղաղության մասին առաջարկները, հայտարարելով, որ «պարսիկները զենքը վայր չեն դնի, մինչև հռոմայեցիները

---

[1] Այս ժամանակին է վերաբերում նաև Հրահատի և Նարսեհի՝ հռոմայեցիների կողմն անցնելը և Բյուզանդիա հեռանալը:

[2] **Proc.**, I, 15.

չհամաձայնեն կիսել նրանց հետ Կասպից դռան պաշտպանությունը, կամ ավերել Դարա քաղաքը»[1]: Հռուֆինոսը վերադարձավ անհաջողությամբ:

Հաջորդ՝ 531 թ. գարնանը պարսիկները վերսկսեցին ռազմական գործողությունները:

Այս անգամ որպես պատերազմի թատերաբեմ էր ընտրվել ոչ թե Միջագետքը, այլ Եփրատեսիան [Կոմմագենե]: Նոր արշավանքի նախաձեռնությունն ու ծրագիրը պատկանում էր պարսկական տիրապետության ներքո գտնվող սարակինոսների արքային՝ Ալամունդարոսին: Չտեսնված եռանդով և հարուստ կենսափորձով, ռազմավարության հրաշալի գիտակ, չափազանց նվիրված լինելով պարսիկներին, նա հռոմայեցիների հանդեպ դառն ատելությամբ էր տոչորվում: Հիսուն տարի անընդմեջ նա անպատիժ տագնապեցնում էր հռոմեական պետությունը անվերջ ասպատակումներով: Անակնկալ և սրընթաց հարձակումներով նա ավերում էր հռոմեական տիրույթները Եգիպտոսից մինչև Միջագետք: Ալամունդարոսը, օժտված լինելով արքայական պատվով և իշխանությամբ, որ տարածվում էր բոլոր պարսիկներին հպատակ սարակինոսների վրա, իր ձեռքի տակ ուներ բավականին հզոր բանակ: Հռոմեական սարակինոսներն ի վիճակի չէին դիմագրավելու Ալամունդարոսի արշավանքները, քանի որ նրանց ուժերը տրոհված էին մի քանի ցեղապետերի, այսպես կոչված ֆիլարքոսների միջև: Հուստինիանոս կայսրը համախմբեց սարակինոսների ցեղերը ընդհանրական արքայական իշխանության ներքո և հանձնեց այն Արեթասին, Գաբալայի որդուն, որն Արաբիայի սարակինոսների առաջնորդն էր: Բայց Արեթասը շատ էր զիջում Ալամունդարոսին իր ռազմավարական ունակություններով և չէր կարող նրան ետ պահել հետագա արշավանքներից:

Կավատը բարձր էր գնահատում Ալամունդարոսի արժանիքները: Երբ պարսից արքան մտադրվեց նոր արշավանքի, ճարպիկ սարակինոսը խորհուրդ էր տալիս նրան պատերազմը Միջագետքից տեղափոխել Եփրատեսիա: Միջագետքն ու Օսրոենեն որպես առաջնային սահմանամերձ շրջաններ, իրենց ամրոց-քաղաքներով և այնտեղ կուտակված զորքերով, Ալամունդարոսի կարծիքով, պարսիկների համար իբրև պատերազմի բեմահարթակ հուսալի չէին: Այդ երկրամասեր արշավելը կասկածելի գործ էր, կապված հնարավոր ջախջախման բոլոր վտանգների հետ: Մինչդեռ Եփրատից այն կողմ գտնվող տարածքը և հարևան Ասորիքն իր Անտիոք մայրաքաղաքով հանդերձ, որը կայսրության ամենաբարգավաճ և մար-

---

[1] Proc., 16, p. 81. 16, p. 81.

դաշտատ քաղաքներից մեկն էր, այնպիսի վիճակում էին, որ չունեին ոչ ամրոցներ և ոչ էլ պատշաճ քանակությամբ զորք՝ երկրամասը պաշտպանելու համար: Այն կողմերում կարելի էր գործել անխափան և առանց որևէ անակնկալի:

Ալամունդարոսի նկատառումները Կավատին համոզիչ թվացին և նա սպառազինում է 15.000-ոց հեծելազոր:

Դարայի ճակատամարտում պարտության համար պաշտոնանկ արված Պերոզ-Միհրանի[1] փոխարեն արքան զորապետ նշանակելով Ազարեթին, կարգադրեց նրան հետևել Ալամունդարոսին որպես առաջնորդի: Պարսկական զորքը շարժվեց հարավ՝ դեպի Ասորիք, և, անցնելով անապատը, հայտնվեց Եփրատեսիայում: Բելիսարիոսը, իմանալով պարսիկների անսպասելի շարժման մասին, գլխավորելով 20.000-անոց հեծելազորին և հետևակին, սլացավ ընդառաջ և նրանց հասավ Քաղկիս քաղաքի մերձակայքում, Գաբբուլոն ավանում, որը քաղաքից 110 ասպարեզ (մոտ 19 «վերստ») հեռու էր[2]: Զարմանալի այս արագընթացությամբ հռոմայեցի զորավարը խախտեց Ալամունդարոսի բոլոր ծրագրերն ու ակնկալիքները: Ազարեթը, նույնպես հուսահատված, հնարավոր չհամարեց շարունակել գրոհը և որոշեց հետ դառնալ Պարսկաստան: Գաբբուլոն ավանից, որտեղ գտնվում էր պարսիկների ճամբարը, նա նահանջում էր Եփրատի արևմտյան ափով, և Բելիսարիոսը, հետևելով նրան, Սուրոնի (այժմ՝ Սուրիխ) մոտակայքում, Կալլինիկոնի դիմաց մարտի է բռնվել, որն իր օգտին չավարտվեց[3]: Ճակատամարտը տեղի ունեցավ 531 թ., ապրիլի 19-ին, Ավագ շաբաթ: Ազարեթը, թեև մարտում հաջողության է հասել, բայց այնքան լուրջ մարդկային կորուստներ է կրել, որ շնորհազուրկ եղավ Կավատի կողմից[4]:

Ճակատամարտից հետո Հուստինիանոսը կրկին փորձեց պարսիկների հետ խաղաղություն հաստատել՝ խաղաղություն, որը նրան առավել ցանկալի է Աֆրիկայում վանդալների դեմ բռնկվող պատերազմի պատճառով: Սակայն Կավատը, Եփրատեսիայի արշավանքի անհաջողությունից զայրացած, մերժեց Հուստինիանոսի առաջարկը և վերսկսեց ռազմական գործողությունները Միջագետքում: Երեք ականավոր զորավարներ՝ խա-

---

[1] **Proc., I, 17, p. 85.** «Արքան խլեց նրանից ոսկուց և մարգարիտներից պատրաստված վարսակալը»:

[2] Արաբերեն՝ Քեննշրին. **Lebeau III**, p. 54. Дестунис, Прокопий, 231, I.

[3] Կալլինիկոնի ճակատամարտը, 531 թ., ապրիլի 19-ին, տե՛ս **Malalas**, p. 463:

[4] **Proc., I, 18.**

նարանգես Աղերգուղունբաղեսը, Ասպեբեղեսն ու Մերմերոեսը մեծ զորքով ներխուժեցին Հայաստանի սահմանները և շրջապատեցին Ծոփքի Մարտիրոպոլիս քաղաքը: Սիտտասը, որ նշանակված էր Բելիսարիոսի փոխարեն, դուրս եկավ Հայաստանից[1], որտեղ նա մնում էր... (11), և շտապեց Մարտիրոպոլիսին օգնության: Նա ճամբարեց Ատտախաս վայրում[2], պաշարված քաղաքից 100 ասպարեզ հեռու: Մարտիրոպոլսին սպառնում էր անհապաղ անկում՝ պարենային պաշարների և ռազմական սարքավորումների պակասի պատճառով: Պաշարվածների ճակատագիրն անհանգստացնում էր Սիտտասին, բայց նա այլ հնարավորություն չուներ նրանց օգնելու, քան պատվիրակներ ուղարկել պարսից հրամանատարների մոտ և առաջարկել վերջ տալ պաշարմանը՝ այն պատրվակով, որ կայսրից դեսպաններ են ժամանել, որոնք գնում են արքայի մոտ բոլոր վեճերը խաղաղությամբ լուծելու համար: Մեծաքանակ զորքի հրամանատարներ էին խանարանգես Աղերգուղունբաղեսը, Ասպեբեղեսն ու Մերմերոեսը[3]: Դրա մի մասը շարժվեց դեպի Օսրոենե և պաշարեց Ավգարշատ ամրոցը, որ կառուցված էր Աբգարի՝ <Օսրոենցիների> տիրակալի կողմից (Ἀβγαρσᾶτον, κτισθὲν ὑπὸ Ἀβγάρου, τοπάρχου τῆς Ὀσροηνῶν πόλεως): Պարսիկները, թեև մարդկային մեծ կորուստների (1000 մարդ) գնով, գրավեցին քաղաքը և սրի քաշեցին ամբողջ կայազորը[4]: Մյուս ջոկատը, 6000 մարդուց բաղկացած, ուղևորվեց հյուսիս և, ճամբարելով Նիմփիոս գետի ափին, սպառնում էր Մարտիրոպոլիս քաղաքին[5]: Հուստինիանոսն ազատեց Բելիսարիոսին պաշտոնից և նրան փոխարինեց Մունդոսով (Μοῦνδος), որ ստանձնել է Magister militum per Orientem պաշտոնը: Պրոկոպիոսին հակառակ, Բելիսարիոսի հետ կանչումը Մալալասը կապում է զեկուցման հետ, որ ներկայացրել է գործերի իսկական ընթացքին ծանոթանալու համար Արևելք ուղարկված հատուկ սուրհանդակը[6]:

Սիտտասը, στρατηλάτης πραισέντου, այսինքն՝ magister militiae praaesentis, որ այն ժամանակ մնում էր Հայաստանում, հրաման է ստանում ուղևորվելու պատերազմի դաշտ: Հայոց լեռներից Սիտտասն իջավ Սամոսատ և այստեղից դուրս եկավ Մարտիրոպոլիսին օգնության[7]:

---

[1] Malalas, p. 465.

[2] [ἐς χωρίον... Ἀτταχᾶς, Proc., I, 21, p.108] (12).

[3] Proc., I, 21, p. 167.

[4] Malalas, p. 465.

[5] Անդ, ibid.; Procop., ibid.

[6] Անդ, p. 466.

[7] Անդ, p. 468.

Մինչդեռ պարսիկների հրամանատարները զբաղված էին Մարտիրոպոլիսի պաշարմամբ, Դորոթեոսը՝ Հայաստանի զորավարը (ὁ τῆς Ἀρμενίας στρατηλάτης) գործում էր պարսիկների դեմ հարձակողական եղանակով, հարքելով մարտերում, վարվում էր նրանց հետ ամենայն դաժանությամբ՝ կոտորելով բազմաթիվ բնակիչների՝ ինչպես պարսիկներից, նույնպես և հայերից: Նա գրավեց բազմաթիվ ամրոցներ. ի միջի այլոց, կործանվեց և անառիկ մի բերդամրոց, որ կանգնած էր լեռնակատարին: Նրա մոտ էր տանում միակ նեղ արահետը, որով բնակիչներն իջնում էին դեպի գետը՝ ջուր վերցնելու համար: Այնտեղ, որպես ամենաապահով վայրում, տեղացի վաճառականները թաքցրեցին իրենց ապրանքը: Իմանալով այդ մասին, Դորոթեոսը պաշարեց դղյակը, պահակազոր դրեց արահետի վրա և սովով ստիպեց պաշարվածներին հանձնվելու: Տիրելով տեղին, նա լուր է ուղարկում կայսրին դղյակում ձեռք բերված գանձերի մասին, որոնք ընդունելու համար կայսրից ուղարկվեց սենեկապետ Նարսեսը[1]:

Այդ միջոցին Մարտիրոպոլիսի մոտ գտնվող պարսկական ճամբարում լուր են ստացել Կավատի վախճանի և նոր արքայի [Խոսրով I Անուշիրվան] գահ բարձրանալու մասին: Վախենալով գահաժառանգության հետ կապված հնարավոր խժդժություններից, պարսիկները համաձայնեցին ընդունել Սիտտասի խաղաղության առաջարկը, առավել ևս որ տագնապալից լուրեր էին հասնում հոների՝ մոտ ապագայում սպասվող արշավանքի մասին: Պարսիկները, ըստ երևույթին, դրդում էին հոներին հարձակվել հռոմայեցիների վրա, թեև ի պատասխան Հուստինիանոսի հարցման նրանք մերժեցին հոների ասպատակումներին իրենց հաղորդ լինելը[2]: Պրոկոպիոսը պատմում է[3], որ Հուստինիանոսը, հոների կողմից սպառնացող վտանգի մասին իմանալով գերեվարած պարսիկ լրտեսներից, ձեռնառատ պարգևեց նրանց և համոզեց գնալ դեպի պաշարված Մարտիրոպոլիսը և լուր տարածել, որ հոները, հռոմայեցիներից կաշառված, պատրաստվում են զենքը շրջել պարսիկների դեմ: Այս հանգամանքը մեծապես նպաստեց պարսիկների կողմից պաշարումը շուտափույթ վերացնելուն:

Հոների արշավանքների մասին լուրերն անհիմն չէին և իսկապես շուտով այն կատարվեց: Ներխուժելով Կասպից դռան միջով, հոն-սաբեյրները թափվեցին դեպի հռոմեական տիրույթները և ավերիչ ասպատակումով

---

[1] **Malalas**, p. 458 (13).

[2] **Անդ**, p. 472.

[3] **Proc.**, I, 21.

անցան Հայաստանը և բոլոր երկրները մինչև Եփրատեսիա, Կիլիկիա և Կյուրեստիկոն[1]: Դորոթեոսը հրաման էր ստացել ետ մղել հոներին: Լսելով դրա մասին, հոները իսկույն նահանջեցին դեպի իրենց սահմանները: Դորոթեոսը հետապնդեց նրանց և ետ գրավեց ավարի մեծ մասը[2]:

Հուստինիանոսի ուղարկած դեսպանները շուտով ներկայացան պարսից արքային: Բանակցությունները ընթանում էին դանդաղ և ընդհատումներով: Պարսիկների ներկայացրած պայմանները ծանր էին թվում հռոմայեցիներին: Երկար վիճաբանություններից հետո համաձայնություն կայացավ հետևյալ կետերի վերաբերյալ՝ 1. հռոմայեցիները վճարում են պարսիկներին 110 կենտինար, 2. պատերազմի ժամանակ նվաճված ամրոցները փոխադարձաբար վերադարձվում են: Պարսիկները զիջում են հռոմայեցիներին Լազիկայի Սկանդա և Սարապանիս ամրոցները, իսկ հռոմայեցիների՝ Հայաստանում գրաված Բոլոն ու Փառանգիոնը կրկին անցնում են պարսիկների ձեռքը, 3. հռոմայեցի զորավարներն իրենց ռազմակայանը տեղափոխում են Դարայից Կոստանդինե, 4. իբերներին հայրենիք վերադառնալու կամ Բյուզանդիայում մնալու ազատություն է տրվում, 5. և ավելին, ըստ Մալալասի[3], խաղաղությունը կոչված էր վերականգնել վաղեմի բարեկամական հարաբերությունները, որոնք իրենց արտահայտությունն էին գտնում կարիքի դեպքում փոխադարձ օգնության մեջ՝ դրամով կամ մարդկանցով:

Այս պայմաններով[4] կնքվեց այսպես կոչված «Հավերժ խաղաղությունը» (ἀπέρατον καλουμένη εἰρήνη)՝ Հուստինիանոսի թագավորության 4-րդ տարեդարձին, 532 թ., որը և հաստատվեց հաջորդ՝ 533 թվականին[5]:

«Հավերժ խաղաղությունը», սակայն, չարդարացրեց իր անվանումը: Արևելքում տիրող անդորրը լիակատար ազատություն տվեց Հուստինիանոսին՝ Արևմուտքում նվաճողական քաղաքականություն վարելու համար: Լիբիայում և Իտալիայում պատերազմները բերեցին Հուստինիանոսին ընդարձակ տարածքային ստացվածքներ:

[Լիբիայի նվաճումը 533-534 թթ.]: Վանդալների պետությունը անկում էր ապրում այն պառակտման հետևանքով, որ առկա էր մի բուռ զոր տիրակալների և բնիկ բնակչության՝ մավրերի միջև: Իշխանությունը պահ-

---

[1] Հալեպից վերև, **Sen - Martine (Lebeau)**, VIII, p. 175:

[2] **Malalas**, p. 472.

[3] **Malalas**, p. 477, հմմտ. Հեսու Ստիլիտեսի հիշատակված պայմանագրի կետը:

[4] **Proc.**, I, 22. **Malalas**, p. 477.

[5] **Marcell.**, **Chron.**, p. 64.

պանելու մասին մտահոգված վանդալական թագավորները թանկ էին գնահատում բյուզանդական կայսրերի հետ բարեկամական կապերը: Հուստինիանոսի հետ հատկապես կապված էր Հիլդերիխը: 530 թ. նրան՝ բյուզանդական արքունիքի հանդեպ տածած համակրանքի համար գահընկեց է անում Գելիմերը, որն ինքնուրույն և Բյուզանդիայից անկախ քաղաքականության ջերմեռանդ կողմնակից էր: Հուստինիանոսն իբրև տապալված Հիլդերիխի պաշտպան, բռնատիրողին պատերազմ հայտարարեց: Բելիսարիոսը 533-534 թթ. Տրիկամերոնի մոտ կայացած վճռական ճակատամարտում ջախջախեց Գելիմերի ուժերը և Լիբիան միացրեց կայսրությանը:

Հռոմեական զենքի հաջողությունները նախանձ էին ծնում պարսիկների մեջ: Խոսրով I-ը (531-579), որը ակնդետ հետևում էր հռոմայեցիների գործողություններին, վախենում էր Բյուզանդիայի չափից դուրս ընդարձակվելուց՝ նոր նվաճումների հետևանքով: Շնորհավորելով Հուստինիանոսին Լիբիան նվաճելու առթիվ, Խոսրովը կատակելով խնդրում էր իրեն հատկացնել լիբիական ավարի մի մասը, «քանզի եթե պարսիկները հաշտություն չկնքեին, նա չէր հաղթի վանդալներին»[1]: Հուստինիանոսը հանգստացրեց Խոսրովին, նրան դրամ ուղարկելով:

[Իտալիայի նվաճումը 535-539 թթ.]: Լիբիային տիրանալուց անմիջապես հետո պատերազմ սկսվեց Իտալիայում՝ արևելյան գոթերի դեմ: Նրանց գործերին Հուստինիանոսի միջամտության պատրվակ է ծառայել նույն այն իրարանցումը, որը տեղի է ունեցել նաև Աֆրիկայում: Բյուզանդիայի կողմնակից Ամալասունտան սպանվեց, և գահ բարձրացավ առաջնորդներից մեկը՝ Վիտտիգիսը: Բելիսարիոսի գլխավորությամբ ուղարկված զորքերը 535 թ. գրավեցին Սիկիլիան և ձեռնամուխ եղան Իտալիայի նվաճմանը:

Պատերազմի հաջող ընթացքը առավել գրգռեց Խոսրովին: Նա պատրաստ էր խախտել հաշտությունը և միայն պատշաճ առիթ էր որոնում: Հանգամանքները նպաստեցին նրա մտադրության՝ նրան հայտնի դարձան որոշ փաստեր, որոնք կարող էին բավարար հիմք հանդիսանալ խաղաղ հարաբերությունները խզելու համար:

Ստրակա սարակինոսների ցեղապետերի միջև վեճ ծագեց ընդարձակ արոտավայրերի համար, որոնք գտնվում էին Պալմիրայից հարավ: Արեթասը պնդում էր դրանց հռոմայեցիներին պատկանելը, հղելով դրանց լատիներեն անվանմամբ՝ Ստրատա (սալարկված ճանապարհ): Ալամուն-

[1] Proc., P. I, 26.

դարոսն էլ պնդում էր, որ վիճարկվող տարածքը փաստորեն գտնվում էր իր օգտագործման մեջ: Հուստինիանոսից վեճը քննելու համար՝ նշանակված դատավորներն ավելի էին բարդացնում խնդիրը՝ իրենց վրա հրավիրելով Խոսրովի մեղադրանքը նրանում, որ նրանք աշխատում էին կաշառքի օգնությամբ իրենց կողմը քաշել Ալամունդարոսին՝ պարսիկների բարեկամին[1]: Պարսից արքան իր դժգոհությունն էր հայտնում նաև զաղտնի քարոզչության համար, որը վարում էին բյուզանդական իշխանությունները բարեկամ հոների մեջ, դրանց պարսիկների դեմ ապստամբեցնելու նպատակով. ընդ որում Խոսրովը հղում էր Հուստինիանոսի սադրիչ նամակներին, որ նրան էին հասցնում իբր իրենք՝ հոները[2]:

Այդ պահին ժամանած գոթերի պատվիրակությունը ավելի էր գրգռում Խոսրովի կրքերը: Գոթերի թագավոր Վիտտիգիսը, անհաջողությամբ փորձելով Բելիսարիոսի դեմ դաշնակից գտնել գերմանների և լանգոբարդների մեջ, մտադրվել էր Հուստինիանոսի դեմ պատերազմի մեջ ներքաշել պարսից թագավորությունը: Այս նպատակով նա Պարսկաստան է ուղարկում գաղտնի պատվիրակություն, որը երկու լիգուրացի երեցներից էին կազմված[3]: Պատվիրակները կոչ էին անում Խոսրովին խզել Բյուզանդիայի հետ կնքած հաշտությունը և այն միտքն էին անցկացնում, որ Հուստինիանոսը, բնավորությամբ անհանգիստ և ուրիշի ունեցվածքին տենչացող, փափագում է զավթել ողջ աշխարհը, ուստի և չի կարող դիտվել իբրև պարսիկների բարեկամ: Նա միայն առժամանակ դադարեցրեց պարսիկների դեմ պատերազմը՝ վանդալներին հնազանդեցնելու համար. նրանց թագավորությունը ոչնչացնելով, նա իր հայացքը դարձրեց գոթերի վրա: Կասկածից վեր է, որ, ջախջախելով գոթերի ուժերը, նա չի հապաղելու իր զենքը դարձնել պարսիկների դեմ՝ չէ որ նրա համար բարեկամությունն ու երդումները ոչինչ են:

Այս նկատառումներից ելնելով նա (այսինքն՝ Վիտտիգիսը) համոզում էր Խոսրովին կանխել վտանգը և բաց չթողնել պատերազմ սկսելու բարեպատեհ պահը[4]:

Հայաստանում տեղի ունեցած տազնապալից իրադարձությունները արագացրեցին հարաբերությունների խզումը: Հայ բնակչության մեջ տարածվող քաղաքական խմորումն անշուշտ պայմանավորված էր Հուս-

[1] Proc., Pers., II, I, p. 157.

[2] Անդ, p. 156.

[3] Proc., Goth. II, 22, P. II. 2.

[4] Proc., Pers., II, 2.

տինիանոսի կատարած երկրի կառավարման վերջին ձևափոխություններով (14):

Սատալայի ճակատամարտից հետո, 531 թ. Սիտտասն և Դորոթեոսը գրավեցին Պարսկահայաստանի սահմանամերձ ամրոցները՝ Բոլոսը և այսպես կոչված Փառանգիոնը, որտեղ պարսիկները ոսկի էին արդյունահանում և մատակարարում էին իրենց արքային[1]: Այս կարևոր տեղանքների՝ հռոմայեցիների ձեռքն անցնելը պատահեց դրանց տերերի, տեղացի հայ իշխանների նախաձեռնությամբ: Բոլոսը գտնվում էր Կամսարական եղբայրների՝ Ներսեհի, Հրահատի և Իսահակի, տիրապետության ներքո: Պատերազմի սկզբում, երբ Բելիսարիոսն ու Սիտտասը ներխուժեցին Պարսկահայաստան՝ Հուստինիանոսի գահ բարձրանալուց քիչ առաջ (հավանաբար՝ 526 թ.)[2], Ներսեհն ու Հրահատը հաջողությամբ ետ մղեցին նրանց հարձակումը[3]: Շուտով, սակայն, իրենք անջատվեցին պարսիկներից և իրենց մոր հետ տեղափոխվեցին Բյուզանդիա: Կայսրության գանձապահը, նրանց հայրենակից Ներսեհը, ամենայն ջերմությամբ ընդունեց նրանց և առատորեն պարգևներ շնորհեց: Նրանց օրինակին հետևեց և կրտսեր եղբայրը՝ Իսահակը: Նա գաղտնի բանակցություններ սկսեց հռոմայեցիների հետ՝ իր պահպանության ներքո գտնվող Բոլոս ամրոցը նրանց հանձնելու մասին: Զգուշացնելով հռոմայեցիներին, Իսահակը գիշերը բացում բացեց ամրոցի դարպասները և ներս ընդունեց մերձակայքում սպասող զինվորներին: Դրանից հետո նա գնաց իր եղբայրների մոտ[4]:

Ինչ վերաբերում է Բոլոսին հարևան Փառանգիոն տեղանքին, ապա դրա՝ հռոմայեցիների ձեռքն անցնելը, բարդություններ պատճառեց. Փառանգիոնն, ինչպես ասվեց, հարուստ էր ոսկեհանքերով: Դրանք պատկանում էին պետական գանձարանին և տնօրինվում [վարձվում] էին կառավարությունից նշանակված մասնավոր անձանց կողմից (15): Պերոզ արքայի օրոք հանքերը հսկում էր ոմն Վրիվը, ասորու որդին, ցածր ծագման և գործի մեջ անփորձ մի մարդ: Չկարողանալով վարել իրեն վստահված գործը՝ Վրիվը Պերոզի առջև ամբաստանեց Վահան Մամիկոնյանին (16). «Ինձ ի գործ ոսկէհատին չետ ինչ մօտ երթալ. և իւր ժողովեալ զամենայն

---

[1] Proc., Pers., I, 15.

[2] [ G. Rowlinson, The Seventh Great Oriental Monarchy, p.].

[3] Proc., Pers., I, 12, p. 59.

[4] Անդ, Pers., I, 15, p. 79.

ոսկի աշխարհին՝ խորհի երթալ առ կայսր և կամ յաշխարհն Հոնաց, և տուեալ զոսկին՝ կամի խնդրել զունդ և ապստամբել»[1]:

Կավատի թագավորության օրոք և նրա կարգադրությամբ հանքերը տնօրինում էր տեղացի բնակիչներից մեկը, Սմավոնը, որն արդյունահանված ոսկին ուղարկում էր գանձարան: Օգտվելով պատերազմի հանգամանքներից, Սմավոնը որոշեց զրկել Կավատին հանքերի եկամտից: Նա [նույնպես] անցավ հռոմայեցիների կողմը՝ ըստ երևույթին, Մերմերոեսի նահանջի ժամանակ: Բյուզանդիայի հովանավորության ներքո դնելով և՛ իրեն, և՛ Փառանգիոնը, Սմավոնն, այնուամենայնիվ, իրեն վերապահեց հանքերի օգտագործման արտոնությունը:

Բյուզանդական կառավարությունը չէր պնդում, որ իրեն հատկացնեն ոսկու հանույթի մասը, բավարարվելով, ըստ երևույթին, այն բանով, որ պարսկական գանձարանը կորցրել է այդպիսի շահութաբեր աղբյուրը: Փառանգիոնի տեղանքի բնական պայմանների շնորհիվ պարսիկները չէին կարող բռնի միջոցներ ձեռնարկել Սմավոնի դեմ, որը գտնվում էր Բյուզանդիայի հովանավորության ներքո[2]: Բայց Սմավոնն իր ագահությամբ թշնամիներ ձեռք բերեց տեղական հայ վերնախավում: Օգտվելով կայսերական բարեհաճությունից, նա իր կալվածքներն ընդարձակեց հարևանների հաշվին: Պատերազմը դեռ նոր էր բորբոքվում, երբ նա Հուստինիանոսից խնդրեց այլ հայ իշխաններին պատկանող ինչ-որ գյուղեր: Խնդրանքը հարգվեց, և գյուղերը հանձնվեցին իր տնօրինությանը: Վրդովված այդ փաստով, Պերոզի երկու որդիները, գյուղերի օրինական տերերը, վրեժխնդիր լինելով իրենց հասցրած վիրավորանքի համար, սպանում են նրան և փախչում Պարսկաստան: Հուստինիանոսի կարգադրությամբ Սմավոնի եղբորորդին՝ Համազասպը, ժառանգեց հորեղբոր գյուղերին վերաբերող իրավունքները և նշանակվեց Հայաստանի [այդ մասի] տիրակալ:

Շատ ժամանակ չանցած Համազասպը ևս դարձավ կայսրի վստահությունը վայելող և հայկական ծագում ունեցող ոմն Ակակիոսի բանսարկությունների զոհը: Այս վերջինը գաղտնի ամբաստանեց Համազասպին, թե նա հալածում է հայերին և թաքուն կապվել է պարսիկների հետ՝ Թեոդոսուպոլիսը և այլ քաղաքներ նրանց հանձնելու նպատակով: Կայսեր գիտությամբ նա, խաբելով Համազասպին, սպանում է նրան և իր ձեռքը վերցնում Հայաստանի կառավարումը: Ի բնե լինելով չար, նա, մատնելով իր հոգու հատկությունները, անասելի դաժանությամբ էր վարվում բնակ-

[1] [Ղազար Փարպեցի, Պատմութիւն Հայոց, Տփղիս, 1904, էջ 117] :

[2] Proc., Pers., I,15, p.78.

չության ճկատմամբ, իրեն թույլ էր տալիս ապօրինի դրամական տուրքեր շորթել, և մինչ այդ չլսված հարկ դնել երկրի վրա՝ չորս կենտինար, այն է՝ 400 լիտր ոսկի: Համբերությունը կորցրած հայերը դավադրություն կազմակերպեցին Ակակիոսի դեմ. դրանց թվում էր Արտավան Արշակունին[1]: Սպանությունը գործելուց հետո դավադիրները փախան Փառանգիոն:

Խռովությունը ճնշելու և կարգ ու կանոն հաստատելու համար մայրաքաղաքից ժամանեց Սիտտասը, որին երկրի [ժողովուրդը] քաջ ճանաչում էր դեռևս պարսիկների դեմ մղած պատերազմների ժամանակից: Նա խուսափում էր կտրուկ գործողություններից, աշխատում էր բնակչությանը հանգստացնել խաղաղ միջոցներով և թաքնվողներին վերադարձնել իրենց բնակավայրերը: Նա խոստանում է նրանց բարեխոսել կայսեր առջև Ակակիոսի մտցրած նոր տուրքերը վերացնելու մասին՝ տուրքեր, որոնք ծանր էին նստում ժողովրդի վրա և խռովության հիմնական պատճառ են հանդիսացել: Սակայն Ակակիոսի որդու՝ Ադոլիոսի (որն, ըստ երևույթին, հորից ժառանգել էր նրա չար հակումները), զրպարտությունների պատճառով Սիտտասի մեղմությունն ու խաղաղարար քաղաքականությունն արքունիքում գոհությամբ չընկալվեց: Հապաղելու համար կայսրից ստացած հանդիմանությունը ստիպեց նրան հարձակողական գործողությունների դիմել: Խնդրի լուծումը դյուրացնելու համար նա փորձեց իր կողմը քաշել որոշ հայերի՝ խոստանալով մեծ պարգևներ: Ասպետյանները-Բագրատունիները՝ հայկական ազնվական տոհմերի մեջ մարդաշատությամբ և ազդեցությամբ ամենաhզորներից մեկը, հակված էին դեպի խաղաղություն (17):

Նրանք հայտնեցին, որ պատրաստ են զենքը վայր դնել և անջատվել իրենց ազգակիցներից այն պայմանով, որ իրենք չեն հալածվելու և անխափան կտիրեն իրենց սեփականությանը: Սիտտասը հաճույքով ընդունեց իրեն առաջարկված պայմանները, լիովին համոզված լինելով, որ ազդեցիկ իշխանների հանձնվելուց հետո իրեն կհաջողվի առանց կռվի ճնշել ապստամբությունը: Իր խոստումը, սակայն, Սիտտասը չկատարեց, ճենգորեն տեսնելով իրեն ապավինած հայերի դատաստանը: Հայերը կանգնած էին Օյնոքալակոն տեղանքում (χωρίον Οἰνοχαλάκων), որտեղ կենտրոնացած էին նրանց ուժերը, և սպասում էին բանակցությունների արդյունքի: Սիտտասի ուղարկած պատասխանը դրական էր: Սակայն, երբ հռոմեական զորքը շարժվեց դեպի հայերի զորաճամբարը, առաջապահ ջոկատը, հանդիպելով որոշ հայերի, թշնամաբար վարվեց նրանց նկատմամբ: Պրոկոպիոսը հավաստում է, որ ջոկատը տեղյակ չէր պայմանա-

---

[1] [**Proc.**, II, 27, p. 527?].

վորվածության մասին, բայց չէ որ Սիտտասը դրա մասին գիտեր, և այնուամենայնիվ ինքն էլ արատավորեց իրեն, սրի քաշելով ինչ-որ քարանձավում թաքնված կանանց և երեխաների:

Սիտտասի խարդավանքը վրդովեց Ասպետյաններին: Նրանք միացան իրենց հայրենակիցներին և հարձակվեցին հռոմայեցիների վրա: Հովիտներով և կիրճերով կտրատված լեռնային տեղանքը թույլ չէր տալիս մարտը մի վայրում կենտրոնացնելու: [Ցրված] զորքերը գործում էին բաժանբաժան՝ լեռների ստորոտներում և դիրքերում: Սիտտասին պատահաբար հանդիպում է հայերի մի փոքր ջոկատ, որը նրանից ձորակով էր բաժանված: Հռոմեական զորավարը մի քանի ռազմիկների հետ հատեց ձորակը և հարձակվեց հայերի վրա: Սրանք մի փոքր նահանջեցին: Սիտտասը չհետապնդեց նրանց, բայց մնաց տեղում, իր գեղարդը հողի մեջ խրած: Ռազմիկներից մեկը, հետապնդումից հետ դառնալով իր ընկերների մոտ, չկարողացավ ժամանակին պահել տաքացած ձիուն, զարկվեց գեղարդին և կոտրեց այն: Զորավարը դառնացավ, թերևս դրանում տեսնելով չար նախանշան: Սիտտասի կանխազգացումը ճիշտ էր: Հայերը ռազմիկների մեջ ճանաչեցին նրան, քանզի նա պատահաբար չէր հագել սաղավարտը և այդ հանգամանքը մատնեց նրա ով լինելը: Հայերը հարձակվեցին նրա վրա, և այն ժամանակ, երբ Սիտտասը, իր սուրը մերկացնելով, կրկին հատում էր ձորակը, նրանցից մեկը հասավ նրան և սրով վերք հասցրեց գլխին: Սիտտասը շարունակում էր արշավել, բայց Արտավան Արշակունին՝ Հովհաննեսի որդին, նիզակի դիպուկ հարվածով տեղում սպանեց նրան[1]: Ըստ Պրոկոպիոսի, ոմանք այդ սպանությունը վերագրում էին Սիմոնին՝ աննշան ծագում ունեցող մի մարդու:

Այսպես զոհվեց Սիտտասը, քաջարի ռազմիկը և իր ժամանակի ականավոր զորավարներից մեկը: Նրա փոխարեն Հայաստան ժամանեց Բուզեսը: Նա խաղաղ քաղաքականության կողմնակից էր ձևանում, հայերին խոստացել էր կայսեր հետ հաշտեցնել, և այս պատրվակով փորձում էր բանակցություններ սկսել ամենաազդեցիկ իշխանների հետ: Դառն փորձ ունեցած հայերը Բուզեսին չէին վստահում և նրա խոստումները դիտում էին իբրև խաբելու և իրենց դարանակալելու միջոց: Բայց հայ իշխաններից մեկը՝ Հովհաննես Արշակունին, Արտավանի հայրը, բարեկամական հարաբերություններ ունենալով Բուզեսի հետ, ապավինեց նրան, և մի քանի հայ ազնվատոհմիկների ուղեկցությամբ և իր փեսայի՝ Վասակ [Մամիկոնյանի] գլխավորությամբ ուղևորվեց Բուզեսի մոտ: Երբ նրանք հասան հանդիպման

[1] Proc., Bella Persica, II, 3.

համար նշանակված վայրը, հռոմեական զորքը շրջապատեց նրանց: Վասակը, հասկանալով, թե ինչպիսի ծուղակի մեջ են իրենք ընկել, իզուր հորդորում էր իր անեւ Հովհաննեսին փախուստի դիմել: Վասակը հարկադրված էր լքել նրան և մնացածների հետ միասին գաղտնի կերպով փախչել: Պարզվեց, որ հայերը իրավացի էին, երբ չվստահեցին Բուզեսին: Չնայած վաղեմի բարեկամությանը, նա դավաճանաբար սպանեց Հովհաննեսին:

Հայաստանում բռնկվող խռովությունները, դատելով այն ուշադրությունից, որ նրանց նվիրում է Պրոկոպիոսը, բավական լուրջ բնույթ էին կրում: Իրարանցումներն սկսվեցին Բյուզանդական Հայաստանի այն շրջանում, որտեղ միմյանց էին աղերսվում երեք իշխանական տոհմերի տիրույթները՝ Թեոդոսուպոլիսում նստած վերջին քագակիր Արշակունիների հետնորդները, Սպերի Բագրատունիները և Տայքի Մամիկոնյանները:

Պերոզը, որի որդիները սպանեցին Սիմեոնին (Շմավոնին)՝ իրենց գյուղերը զավթելու համար, հավանաբար, Արշակունի է եղել: Պարսկական անունները ընդունված էին Արշակունիների տոհմում: Տեղադրելով Փառանգիոնը Սպեր նահանգում, հանքերի տեր Սիմեոնին պետք է ըստ ամենայնի ճանաչել իբրև Բագրատունիների՝ Սպերի ժառանգական իշխաններից մեկին: Այս իշխանի անունը հիմք է տալիս Սեն-Մարտենին[1] կարծելու, որ նա հայ չէր, այլ ասորի, թերևս վերոհիշյալ Վրիվի ժառանգորդն էր: Սեն-Մարտենն իրավացի չէր. եթե Շմավոնի անունը հայկական չէ, ապա նրա զարմիկ Համազասպի անունը միանգամայն հայկական է՝ այն սովորաբար կրում էին Մամիկոնյանները: Հնարավոր է, որ Համազասպը Շմավոնի քեռորդին է. այդ դեպքում նա հաստատ Մամիկոնյան է:

Համազասպին կործանեցին Ակակիոսի՝ ծագումով հայի, բայց հայրենիքից օտարացած մի մարդու խարդավանքները[2]: Նա, ինչպես երևում է, մայրաքաղաքի հայերից էր և վայելում էր Հուստինիանոսի մտերմությունը: Նրա որդի Ադոլիոսը հետագայում ծառայում էր արքունիքում սիլենտիարիոսի պաշտոնում, հնարավոր է, որ նա ևս նման մի ծառայություն էր կատարում: Երկուսն էլ ավելի արժևորում էին կայսեր բարեհաճությունը, քան երկրի շահերը: Որպես Հայաստանի կառավարիչ Ակակիոսը շատ էր չարաշահում իր իշխանությունը, բայց ժողովրդից նոր հարկեր գանձելը

---

[1] **Lebeau**, VIII, p. 103, n. 2.

[2] Համազասպի սպանությունը պատահեց մինչև 536 թ., քանի որ այս տարեթվին Ակակիոսն էր Հայաստանի փոխհյուպատոսը, տե՛ս Novel. XXI և XXXI:

դժվար թե կարելի է վերագրել նրա ինքնակամությանը: Ըստ երևույթին, այն կապված էր ձևափոխումների հետ, որ իրականացվել են Հայաստանի ռազմական և քաղաքական կառավարման մեջ նրա՝ 536 թ. կատարված նոր բաժանման առթիվ: Եթե հարկերի հավելումը լիներ լոկ Ակակիոսի գործը, ապա այն չեղյալ հայտարարելու համար Սիտտասը կայսեր բույլտվության կարիքը չէր ունենա: Ակակիոսի հալածանքները ընդհանուր դժգոհություն առաջացրեցին երկրում:

Ակակիոսի սպանությունից հետո ժողովրդի խռովությունը, տեղափոխվելով քաղաքական ոլորտ՝ ընդարձակվում է: Խլրտումները բացատրվում են [Արևմտյան Հայաստանի] երկու զորեղ տոհմերի միջև ընթացող պայքարով: Փոխհյուպատոսի սպանողների թվում հիշատակվում է Արտավան Արշակունին[1]: Հիմք կա մտածելու, որ Ակակիոսի դեմ դավադրության ամբողջ նախաձեռնությունը պատկանում է Արշակունիներին[2]: Կառավարությունը անբարյացկամությամբ էր վերաբերվում հռչակավոր հարստությանը: Հայերի հայտարարի համաձայն, «Արշակունյաց վերջին թագավորը (18) իր սեփական կամքով զիջեց իր թագավորությունը (19) Թեոդոսիոսին (20), որպեսզի ինքը և իր ազգականները հավիտյանս ապրեն ազատ և ենթակա չլինեն որևէ հարկի»[3]: Նրանց հավաստիացմամբ, այդ որոշումը ուժի մեջ էր մինչև 532 թ. հռոմայեցիների և պարսիկների միջև տխրահռչակ պայմանագրի կնքումը: Հայաստանի խռովությունները սկսվեցին հենց այս պահից, և դրանցում ղեկավարող դեր էին կատարում հենց Արշակունիները: Անկասկած, Հուստինիանոսի ձեռնարկությունների մեջ կար մի բան, որ ճնշում էր հատկապես Արշակունիներին: Մատնանշված պայմանավորվածության ճշգրիտ իմաստը դժվարըմբռնելի է: Անկարելի է [«նրա ազգակիցներ»]՝ οἰ

[1] Proc., Bella Pers., II, 27.

[2] Արշակունիների հզոր հարստությունը, կորցնելով արքայական իշխանությունը, իր քաղաքական նշանակությունից վերջնականապես չէր զրկվել: Վերջին Արշակի մահարաջին կնքած պայմանագրի համաձայն, նրա ժառանգներին ապագայում պետք է բացարձակ ազատություն ապահովվեր: Այդ արտոնությունից նրանք օգտվում էին մի ամբողջ հարյուրամյակ: 530-ական թվականներից բյուզանդական իշխանությունը սկսում է, թերևս նկատի ունենալով նրանց հզորացումը, ճնշել նրանց: Հայերի ճառից, որով նրանք ներկայացել են 539 թ. Խոսրովի առջև, երևում է, որ կառավարությունը նրանց վրա հարկ է դրել: Դժվար է մտածել, սակայն, որ Հուստինիանոսը հարկ է դրել <միայն> հայ ազնվականության վրա: Իրականում հարկերը մեծացել են մինչև 4000 գրվանքա ոսկի Ակակիոսի օրոք. և դա բացատրվում է ոչ թե Ակակիոսի անհագուրդ կամ ինքնագլուխ լինելու պարագայով, ինչպես մեկնաբանում է Պրոկոպիոսը, այլ գլխավորապես երկրի նոր կազմակերպմամբ (21):

[3] Proc., Pers. II, 2, p. 136.

κατὰ γένος αὐτῷ (sc. ᾿Αρσάκῃ) արտահայտությունը հասականալ ամբողջ հայ ժողովրդի իմաստով. ավելի հավանական է, որ այն ավելի նեղ իմաստ ունի և նշանակում է միայն Արշակունյաց տոհմը: Նույնպես անհասկանալի է մնում այն ազատության բնույթը, որ Արշակունիները վերապահեցին իրենց՝ սեփական աթոռը Բյուզանդիային փոխանցելու ժամանակ: Դրա մեջ մտնում էր նաև պետական պարհակներից ազատությունը: Սակայն մենք չգիտենք, թե ինչպիսիք են եղել հարկային հարաբերությունները հայոց նախարարների և Բյուզանդիայի միջև: Ուստի և դժվար է որոշել, թե ինչպիսին է եղել այն հարկը, որ դրվել է Ակակիոսի օրոք մինչ այդ ազատ Արշակունիների վրա՝ ի դժգոհություն նրանց. եղե՞լ է այն պարտադիր այլ նախարարական տոհմերի համար, թե մի խստություն էր, որ նախատեսված էր միմիայն Արշակունիների նկատմամբ՝ իրենց հզորության և երկրում ունեցած ազդեցության համեմատ: Դիրքով և նշանակությամբ նրանց գլխավոր մրցակիցներն էին ազնվատոհմ Բագրատունի իշխանները: Սկսվող շարժումը գլխավորում էին Արշակունիները: Նրանց ուժը կոտրելու համար Սիտտասը փորձում էր օգտագործել ազնվական տների պայքարն ու պառակտում մտցնել դրանց միջև:

Պրոկոպիոսի հիշատակած Ասպետյանների տոհմը, որ Սիտտասն իր մոտ է հրավիրում, Բագրատունիներն են: Նրանք անվանվում են իրենց տոհմական տիտղոսով՝ «ասպէտ»[1]: Հանգամանքները դասավորվեցին ոչ Սիտտասի օգտին՝ Բագրատունիներն ավելի թշնամացան նրա նկատմամբ: Նրա հաջորդը՝ Բուզեսը, շարունակելով պառակտման նույն քաղաքականությունը, փորձում էր գործել Արշակունիների միջոցով: Նրա կանչին արձագանքեց Հովհաննեսն՝ իր փեսա Վասակի հետ: Հայերը միանգամայն հասկանում էին, որ իրենք ի զորու չեն երկար ժամանակ դիմակայելու, որ

---

[1] [Տե՛ս Ն. Մառի ստուգաբանությունը]: Պրոկոպիոսի վիեննական հրատարակության մեջ ᾿Ασπετιανοί փոխարեն տպված է ᾿Απετιανοί (հմմտ. Aspetiani լատիներեն թարգմանությունում): Դեստունիսը, Պրոկոպիոսի ռուսերեն թարգմանիչը, առաջարկում է ᾿Απετιανός սրբագրել որպես ᾿Απεγιανός (II, p. 18, ծան. 9): Սրբագրումն անհաջող է: Նախ, հայերեն «Աբեղեան»-ի հունարեն ճշգրիտ տառադարձությունը կլիներ ᾿Αβελ<ι>ανός: Դեստունիսը օգտվել է Վ. Լանգլուայի թարգմանություններից, իսկ այս վերջինը, ինչպես և այլ ֆրանսիացի հայագետները, հայերեն բառերի տառադարձությունը կատարելիս, մխիթարյանների ազդեցությամբ պահպանում էին արևմտահայերենի վերծանությունը: Բացի այդ, Աբեղյանների տոհմը նվաստագույններից էր, և չէր խաղացել որևէ կարևոր դեր ո՛չ VI դարում, ո՛չ էլ դրանից առաջ. մինչդեռ Պրոկոպիոսի Ասպետյանները «մարդաշատ և նշանավոր տոհմ է». τὸ τῶν ᾿Απετιανῶν καλούμενον γένος, μέγα τε ὂν καὶ πολυάνθρωπον (Proc., Pers., II, 3, p. 160):

վերջիվերջո ստիպված կլինեն հնազանդվել իշխանությանը: Արշակունյաց իշխանները առավելապես շահագրգռված էին իրադրության խաղաղ կարգավորման, քանի որ նրանց գլխավոր տիրույթները գտնվում էին Հայաստանի կայսերական մասում (22):

Բուզեսի նողկալի արարքից հետո հայերը կայսեր հետ հաշտվելու հույսը կտրեցին և, չկարողանալով ապավինել սեփական ուժին, օգնության և հովանավորության համար դիմեցին պարսից արքային: Խոսրովի մոտ ուղարկված պատվիրակությունը գլխավորում էր Վասակը, չափազանց գործունյա մի մարդ, օժտված այն բոլոր արտակարգ ունակություններով, որոնք հատուկ էին Մամիկոնյանների տոհմին:

«Մեզանից շատերը, ով տեր, Արշակունիներն են, այն Արշակի տոհմից, որ պարթևների թագավորությանն օտար չեն՝ երբ պարսիկների իշխանությունը գտնվում էր պարթևների ձեռքում: Նա հռչակավոր արքա եղավ և իր ժամանակիցներին ոչնչով չէր զիջում: Մենք այժմ եկել ենք ձեզ մոտ, մենք, ովքեր բոլորս վերածվել ենք ստրուկների ու փախստականների, ոչ կամովին, այլ բռնի, արտաքուստ հռոմայեցիների պետության կողմից, իսկ ըստ էության, ով արքա, քո կամքով: Ով հնարավորություն է տալիս անարդարություն գործել ցանկացողներին, պետք է արդարացիորեն պատասխան տա իր կատարած գործի համար: Մի քիչ ավելի հնից կպատմեմ, որպեսզի դուք հնարավորություն ունենաք հետևելու դեպքերի ընթացքին: Մեր նախնիների վերջին արքա Արշակը կամավոր կերպով իր իշխանությունից հրաժարվեց [hօգուտ] հռոմայեցիների կայսր Թեոդոսիոսի այն պայմանով, որ իր բոլոր տոհմակիցները հավիտյան անկախ ապրեն և ոչ մի դեպքում հարկատու չդառնան: Մենք կարողացանք պաշտպանել սահմանվածը այնքան ժամանակ, մինչև որ դուք կնքեցիք այս չարաբաստիկ հաշտությունը, որը եթե մեկն անվաներ հասարակաց դժբախտություն, սխալված չէր լինի: Որովհետև դրանից հետո, ո՛վ արքա, քեզ խոսքով բարեկամ, բայց գործով թշնամի [Հուստինիանոսը], չմտահոգվելով ո՛չ բարեկամների և ո՛չ էլ թշնամիների մասին, մարդկային ամեն ինչ խառնել ու տակնուվրա է արել: Դրանով դու շուտով կհամոզվես, երբ նա վերջնականապես ջախջախի արևմուտքի [ցեղերին]: Նա սահմանվածից ո՞ր մեկը չխախտեց: Նա տակնուվրա չարե՞ց ամեն մի ներդաշնակություն: Նա չէ՞ր, որ մեզ վրա սահմանեց հարկերի աննախադեպ գումար: Նա չէ՞ր, որ մեր սահմանակից և անկախ ապրող ճաներին ստրկացրեց, իսկ դժբախտ լազերի թագավորի վրա նշանակեց հռոմայեցի կառավարիչ: Այս բոլորը բնության հակառակ են և ոչ մի ձևով հնարավոր չէ արդարացնել: Նա չէ՞ր, որ հոներին ենթակա բոսպորիտների դեմ զորավարներ ուղարկեց

և գրավեց քաղաքը, որի վրա և ոչ մի իրավունք չուներ: [Նա չէ՞ր] երովպացիների իշխանությունների հետ դաշինք կնքողը, որոնց գոյության մասին հռոմայեցիները չէին էլ լսել: Նա արդեն տիրանում է հոմերիտների հողերին և Կարմիր ծովին, իսկ Փինիկոնը կցել է հռոմայեցիների պետությանը: Մենք զանց ենք առնում խոսել լիբիացիների և իտալացիների գլխին եկած փորձանքների մասին: Իսկ դու, ո՞վ արքա, ի՞նչ ես մտածում: Գուցե դու քաշվում ես խախտել ստոր կերպով ոտնահարված խաղաղությունը, սպասում ես, որ նա վերջում քեզ էլ հոշոտի: Եթե դու ուզում ես իմանալ, թե ինչպես է վերաբերվում Հուստինիանոսն իրեն հարած մարդկանց, թարմ օրինակը մենք և դժբախտ լազերն ենք, իսկ եթե ուզում ես իմանալ, թե ինչպես է վերաբերվում անծանոթներին և իր նկատմամբ ոչ մի անարդարություն չկատարածներին, ապա հիշիր վանդալներին, գոթերին և մավրուսիոսներին: Մենք դեռ գլխավորի մասին չենք խոսել: Ո՞վ հզոր արքա, նա չէ՞, որ քո ստրուկ Ալամունդարոսին հաշտության պայմաններում ցանկացավ խաբեությամբ իր կողմը քաշել և քո պետությունից անջատել: Իսկ հոներին, որոնց նա բոլորովին ծանոթ չէր, ջանաց իր հետ բարեկամացնել՝ քո դեմ: Դրանցից խայտառակ բան երբևիցե տեղի չի ունեցել: Նա արդեն կռահում է, որ կկարողանա արևմտականներին վերջնականապես իրեն հպատակեցնել, դրա համար էլ արդեն պատրաստվում է շարժվել ձեր՝ արևելյաններիդ վրա, որովհետև արդեն իրեն մնում է պայքարել միայն ու միայն պարսկական պետության դեմ: Այսպիսով, նրա կողմից արդեն խախտվել է խաղաղությունը, նա վերջ է տվել հավիտենական հաշտությանը: Հաշտությունը խախտած են լինում ոչ թե նրանք, ովքեր նախահարձակ են լինում, այլ նրանք, ովքեր հաշտության ժամանակ ոտնձգություններ են կատարում հարևանների դեմ: Ոճիրը ոճիր է, թեկուզ ձեռնարկողին չի հաջողվել այն իրականացնել: Թե պատերազմը ինչով կվերջանա՝ բոլորին պարզ է: Ոչ թե պատերազմի առիթ տվողը, այլ այդ առիթը տվողի դեմ պայքարողը միշտ հաղթական է դուրս գալիս: Մենք պայքարելու ենք ոչ հավասար ուժերի դեմ: Հռոմայեցիների զինվորների մեծ մասը աշխարհի հեռաստաններում է գտնվում, իսկ նրանց երկու լավագույն զորավարներից մեկին՝ Սիտտասին մենք սպանել ենք, իսկ Բելիսարիոսին էլ այլևս Հուստինիանոսը չի տեսնի: Նա արհամարհելով նրան, մնացել է Արևմուտքում՝ իր ձեռքում ունենալով իտալացիների իշխանությունը: Այնպես որ, երբ դու շարժվես թշնամիների վրա, ոչ մի

դիմադրության չես հանդիպի. մենք, հասկանալի է, կլինենք քո կողմում և տեղանքին քաջատեղյակ՝ կառաջնորդենք քո զորքը»[1]:

Ճառը մտածված և հույժ համոզիչ է: Իհարկե, այն, ինչպես և բոլոր այլ ճառերը, որ հանդիպում են Պրոկոպիոսի երկերում, պետք չէ դիտել իբրև իսկական վավերագիր: Դրանք կազմել է ինքը՝ պատմագիրը: Դա շարադրության հատուկ ձև է, որ ընդունված է դասական հեղինակների կողմից: <Բայց թեև> նման ճառերը հորինում են պատմիչները և ներդնում են գործող անձանց շրթերին, դրանց բովանդակությունը արժանահավատության տեսակետից ոչինչ չի կորցնում: Երբեմն հեղինակին ավելի հեշտ է լինում խոսել ուրիշի շրթերով, և մերկացնել փաստերը, և այնպիսի հայացքներ դրսևորել, որոնց մասին նա ինքը ինչ-ինչ պատճառներով չէր խոսի: Հայկական պատվիրակության ճառի փաստական կողմը ճշմարիտ է. նրանում զգացվող դառնությունը համապատասխանում է բուն իրադրությանը, որը պատկերված է ամենայն ճշգրտությամբ: Այն ամենը, ինչ խոսվում է հայերի, լազերի, ճաների, վանդալների և այլ ազգությունների մասին, ճիշտ է և հաստատվում է Պրոկոպիոսի պատմության համապատասխան տեղիներով:

Հետաքրքիր է համեմատել հայերի ճառը Վիտտիգիսի պատվիրակների ճառի հետ: Գլխավոր մտքով և ընդհանրապես ամբողջ ոգով այս ճառերը միանգամայն նույնանում են և մտնում իրենց հորինող հեղինակին: Այս ճառերում Հուստինիանոսը ներկայացվում է իբրև բնավորությամբ խռովահույզ, անհագուրդ, ուրիշի իրավունքն ու սեփականությունը արհամարհող մի մարդ[2]: «Հուստինիանոսն,-ասում են գոթերը,-իր բնությամբ լինելով անհանգիստ և փափագելով այն, ինչ նրան չի պատկանում, չի կարող բավարարվել ընդունվածով, բայց դիմում է բոլոր միջոցներին, որպեսզի իրեն հնազանդեցնի բոլոր քաղաքները և նվաճի ողջ տիեզերքը»: Նույն կերպ նրան բնութագրում են հայերը[3]. Ամբողջ աշխարհը նրան փոքր է թվում, նա չի կարողանում այնտեղ տեղավորվել: Նրա համար քիչ է ամբողջ մարդկության վրա տիրելը: Նա իր հայացքը հառել է երկինք և հետախուզում է օվկիանոսից վերև գտնվող խորշերը, ցանկանալով ձեռք բերել ինչ-որ ուրիշ երկիր էլ: Ճիշտ է, Պրոկոպիոսն իր կողմից ավելացնում է, որ «Հուստինիանոսին նախատում էին այն արարքների համար, որոնց համար ազնիվ հոգով օժտված թագավորը արժանի է գովասանքի՝ այն է, որ նա

---

[1] **Proc., II, p. 21-25, Wien, 164-167 (23)**.

[2] **Proc., Pers. II, 2.**

[3] **Ibid., II, 3.**

փորձում էր ընդարձակել և փառավորել իր տերությունը»[1]: Կասկածից վեր է, սակայն, որ նա այս խոսքերում է կեղծում, և ոչ այն ճառերում, որ նա դնում է Հուստինիանոսի թշնամիների բերանին:

Հայկական պատվիրակությունը ներկայացավ Խոսրովին աշնանը, Հուստինիանոսի տիրապետության տասներերկրորդ տարին, այսինքն՝ 539 թ.: Պատերազմի խնդիրը Խոսրովն առաջարկեց բարձրագույն պաշտոնյաների խորհրդի քննարկման, որտեղ դրա առթիվ դրական որոշում կայացվեց:

Հուստինիանոս կայսրը, իմանալով պարսից արքայի ռազմական պատրաստությունների մասին, վտանգը կանխելու միջոցներ ձեռնարկեց: Նա ուղարկեց իրեն արդարացնող բացատրություններ և հերքեց հարուցված մեղադրանքները: Հուստինիանոսը նախատում էր Խոսրովին այնու, որ նա հորինում է չեղած պատճառներ և սին պատրվակներ է որոնում խաղաղությունը խախտելու համար, և այն կարծիքն էր հայտնում, թե արքային անվայել է հերյուրանքներով ոչնչացնել իր տված երդումը: Հուստինիանոսի պատվիրակներն ամեն ջանք թափում էին Խոսրովին համոզելու խելամտորեն խուսափել կործանարար նախաձեռնությունից, որի ամբողջ պատասխանատվությունն ստանձնելու են պարսիկները[2]: Հուստինիանոսի հորդորներն ապարդյուն մնացին: Պարսիկները պատրաստվում էին պատերազմի և սպասում էին ձմռան ավարտին:

[Խոսրովի առաջին արշավանքը. 540 թ. գարուն - ամառվա վերջը]: Երբ եկավ գարունը, Խոսրովը մեծ զորքով հանդերձ ներխուժեց հռոմեական տարածքները և այսպիսով խախտեց  ստահամբավ «Հավերժ խաղաղությունը»: Զորքն ընթանում էր Եփրատի արևմտյան ափով՝ նույն այն ճանապարհով, որով շարժվում էր Խոսրովի հայրը՝ Կավատը, 531 թվականին: Մտադիր լինելով ամայացնել Ասորիքն ու Կիլիկիան, Խոսրովը չանհանգստացրեց հռոմայեցիներին, որոնք զբաղեցնում էին սահմանամերձ ամրոցը, Կիրկեսիոնը[3]: Պարսկական զորամասերն արագ առաջ ընթացան և Զենոբիա քաղաքի գրավման թուլցիկ և անհաջող փորձից հետո հասան Սուրոն: Խփելով զորաճամբար, Խոսրովը շարժեց զորքը գրոհի՝ դեպի

[1] [Proc., Hist. arcana].

[2] [II, 4, p. 170-171].

[3] Κιρκήσιον, Եփրատի վրա, Արբոռա (ժամանակակից Հաբուրա) գետաբերանի մոտակայքում: Նրա ավերակների վրա այսօր գտնվում է Աբու Սարայ փոքր քաղաքը, K. Ritter, Erdkunde, XI, 266:

քաղաքը: Կայազորի պետը, Արշակը, ազգությամբ հայ, համառորեն դիմակայեց: Շարելով ռազմիկներին պարիսպների վրա, նա քաջաբար կռվում էր. խիզախ հակահարվածներով մեծ կորուստներ պատճառում թշնամուն և վերջապես ինքը զոհվեց նետից: Երբ հաջորդ օրը պարսիկները վերսկսեցին գրոհը, քաղաքի բնակիչները, զորապետի մահից ընկճված, որոշեցին անձնատուր լինել: Իրենց եպիսկոպոսի միջնորդությամբ նրանք բանակցություններ սկսեցին Խոսրովի հետ, խոստանալով այնքան հարկ վճարել, որքան թույլ են տալիս քաղաքի միջոցները, միայն թե նա խնայի բնակիչներին:

Քաղաքը գրավելուց հետո Խոսրովը, անտեսելով պայմանները, հույժ դաժանորեն վարվեց բնակչության հետ՝ քաղաքը հիմնահատակ կործանեց, և գերեվարեց 12.000 հոգի, որոնց փրկագինն իր առաջարկով հետագայում տվեց հարևան քաղաքի՝ Սերգիոպոլիսի, եպիսկոպոսը: Պարսկական զորքը մոտեցավ Հիերապոլիս քաղաքին, որի բնակիչները, ավերումը կանխելու համար, խոստացել են Խոսրովին վճարել 2000 լիտր արծաթ: Դրամը ստանալուց հետո պարսից արքան ուղևորվեց դեպի Բերոյա[1], քանի որ դրա պաշտպանությունը թույլ էր: Այստեղ Խոսրովը հիերապոլսեցիների վճարածի դիմաց կրկնակի դրամ պահանջեց: Բնակիչները նրան հանձնեցին ընդամենը 2000 լիտր արծաթ, իսկ մնացած գումարի վճարումից հրաժարվեցին՝ այն չունենալու պատճառով: Անտիոքի եպիսկոպոսի միջնորդության շնորհիվ գործն ավարտվեց առանց արյունահեղության:

Անտիոքի՝ երկրամասի ամենահարուստ քաղաքի բնակիչներն իրենց եպիսկոպոսին ուղարկեցին Խոսրովի մոտ՝ խաղաղություն առաջարկելու: Խոսրովը խոստացավ թողնել հռոմեական տարածքը նրան 10 կենտինար կամ 1000 լիտր ոսկի վճարելուց իսկույն ևեթ: Այդ ժամանակ մայրաքաղաքից Անտիոք եկան պատվիրակները՝ Խոսրովի հետ բանակցություններ վարելու համար, և արգելեցին բնակիչներին դրամով փրկագնել կայսերական քաղաքները: Խոսրովը շարժվեց դեպի Անտիոք, և շուտով պարսկական վրանները տարածվեցին քաղաքի առջև: Մեկ անգամ ևս նա իր պատվիրակի միջոցով հայտնեց քաղաքի փրկագինը տալու իր պայմանները: Մերժում ստանալով՝ զորքերը շրջապատեցին քաղաքը, և, չնայած բնակչության համառ դիմակայությանը, գրավեցին այն:

Պարսիկները չխնայեցին քաղաքը. սրի էին քաշում, առանց տարիքը նայելու, կողոպտում էին ունեցվածքը, շատերին գերեվարեցին, անխնա ավերեցին և այրեցին բազմաթիվ շինություններ, այդ թվում և հոյակապ

---

[1] Այեպպո, Հալեպ:

եկեղեցիները, որոնց հարուստ սպասքը և մարմարե քանդակներն առանձնացրին՝ Պարսկաստան տանելու համար:

Անտիոքի գրավումից հետո Հուստինիանոսի պատվիրակները կրկին ներկայացան Խոսրովին, նորից բողոքելով պարսիկների անարդար արարքների, երդմնազանցության և պայմանագրի խախտման դեմ: Պատվիրակների ճառերին Խոսրովը պատասխանեց, որ «դրամով վաստակած ժողովուրդների բարեկամությունը, ինչպես և ինքը փողը, որ ծախսվում է, փողի հետ միասին նվազում և անհետանում է»[1]:

Խոսրովը նրանց իմաց տվեց, որ ամուր խաղաղության համար անհրաժեշտ է որոշակի գումար, որը հռոմայեցիները պետք է վճարեն նրան ամեն տարի՝ իհարկե, ոչ որպես տուրք, բայց իբրև հատուցում պարսիկներին՝ Կասպից դուռը հսկելու, ինչպես և Դարա քաղաքի համար: Երկար վիճաբանությունից հետո եկան նախնական համաձայնության, ըստ որի հռոմայեցիները պարտավորվում էին Խոսրովին միանվագ վճարել 50 կենտինար, և հավիտյանս՝ ևս 5՝ ամեն տարի, որպեսզի նա լքի հռոմեական տարածքները: Որպեսզի հռոմայեցիները ճիշտ կատարեն պայմանները, Խոսրովը պատանդներ պահանջեց, և սկսեց նահանջը: Նա չընտրեց այն ճանապարհը, որով արշավել էր: Այցելելով Սելևկիա՝ ծովափնյա քաղաքը, նա գնաց Ասորիքի Ապամեա քաղաքը, իբր այն տեսնելու, բայց իրականում՝ կողոպտելու համար: Առանց հենց նոր կնքված պայմանագրից նեղվելու, նա բնակիչներից պահանջեց 1000 լիտր արծաթ. տարավ նաև եկեղեցիներում պահվող արծաթե և ոսկե սպասքը և զանազան թանկարժեք իրեր: Ապամեայից նա ուղևորվեց Քաղկիս[2]: Բնակիչները, նրա սպառնալիքներից սարսափած, դժվարությամբ հավաքեցին 2 կենտինար ոսկի և դրանով կանխեցին այլապես անխուսափելի պատուհասը:

Վարվալիսսա (այժմ՝ Բելիս) ամրոցից ոչ հեռու, Օվաննա գյուղի հարևանությամբ Խոսրովը անցավ Եփրատը և ուղևորվեց Եդեսիա: Խոսրովը ցանկանում էր հուսահատեցնել քրիստոնյաներին իրենց հավատալիքում, որ քաղաքը անառիկ է, բայց շուտով ստիպված եղավ հրաժարվել այս փորձից: Բնակիչներից ստանալով 2 կենտինար ոսկի, նա հեռացավ: Եդեսիայի մերձակայքում Խոսրովը ստանում է Հուստինիանոսի նամակը, որում նա հաստատում էր խաղաղության պայմանները: Խոսրովն ազատ արձակեց պատանդներին, բայց շարունակում էր հանդիպած քաղաքներից փրկագին պահանջել: Կարրեի և Կոստանդինեի բնակիչները նրան շատ

---

[1] Proc., Pers. II, 10, p. 199.

[2] [Արաբերեն]՝ Քեննշրին:

դրամ բերեցին: Հասնելով Դարա, նա պաշարեց այն: Կայազորը, Մարտինոսի գլխավորությամբ, քաջաբար դիմակայեց: Հուսահատվելով հաջողության հասնելու մեջ, Խոսրովը բանակցություններ սկսեց պաշարվածների հետ, 1000 լիտր ոսկի ստացավ և հեռացավ իր երկիրը: Ամառն արդեն վերջանում էր[1]:

Սուրոնի գերիների համար 200 [լիտր] ոսկի,
Հիերապոլիս 2000 [լիտր] արծաթ,
Անտիոք՝ կողոպտված է (10. 000),
Ապամեա՝ կողոպտված է,
Քաղկիս՝ 200 ոսկի,
Եդեսիա՝ 200 ոսկի,
Դարա՝ 1000 ոսկի:

Ընդամենը՝
2000 արծաթ
1600 ոսկի
Չհաշված՝ 10.000 Անտիոք (24):

Այդ ժամանակ Իտալիայից Բյուզանդիա ժամանեց Բելիսարիոսը՝ գերեվարված գոթերի թագավոր Վիտտիգիսի հետ: Ձմեռելով Բյուզանդիայում (540 թ.), գարնանը նա ուղևորվեց Արևելք, պարսիկների դեմ, իր հետ վերցնելով Իտալիայից եկած զորավարներին: Նրանցից մեկին, Վալերիանոսին, հանձնարարվեց գլխավորել հայկական զորքը: Նույն ժամանակ Դարա է ուղարկվել Մարտինիանոսը, որին հանդիպեց Խոսրովն իր նահանջի ճանապարհին[2]:

.......................................................................................................(25):

Վերջին հանգամանքը ձեռնտու չէր լազերին: Նրանց մեջ օտար զորքի մշտական ներկայությունը շատ անհարմար դրություն էր ստեղծում: Երկրի [Լազիկա] աղքատ բնակչությունն իր միջոցներով ստիպված էր զորք պահել, որից և ոչ մի օգուտ չէր ստանում, և որը, պաշտանության պատրվակով, հայրենիքը կապանքների մեջ էր պահում[3]: Առավել զգալի էր զորքը

[1] **Proc.**, Pers., II, 13 (540 թ.).
[2] **Proc.**, II, 14.
[3] **(Proc.)**.

գլխավորող հրամանատարների քմահաճ կառավարումը: Քիչ հոգալով բնակչության բարօրության մասին, սրանք տնօրինում էին նրա ճակատագիրն ըստ իրենց սեփական շահի: Հրամանատարները ճնշում էին բնակչությանը, հալածելով ազատ և անկախ գործունեության ցանկացած դրսևորում: Այս պարագային թագավորական իշխանության հեղինակությունը նսեմանում էր և թագավորի իրավունքները հետզհետե անցնում էին ամենազոր հրամանատարների ձեռքը: Թագավորը, ասում է Պրոկոպիոսը[1], կիսելով սպասավորի ճակատագիրը, սարսափում էր իրեն հրամայող զորավարից: Հրամանատարներից առաջինն իսկ՝ Պետրոսը, իր շահախնդրությամբ և բնակչության նկատմամբ անպարկեշտ վարվեցողությամբ ընդհանուր անախորժություն է առաջացրել և իր մասին վատ հիշատակ է թողել երկրում: Հաջորդ հրամանատարներից աչքի էր ընկնում հատկապես Հովհաննեսը, Ցիբոս մականվամբ[2], որն իր բացասական հատկություններով գերազանցեց իր նախորդներին:

Ցածր ծագում ունեցող՝ նա զորավարի պաշտոնի է հասել ծառայողական ասպարեզում՝ իր ճարպկության և նպատակին հասնելու համար միջոցների մեջ խտրություն չդնելու ունակության շնորհիվ: Նշանակվելով Լազիկայի զորավար, Հովհաննեսը վատ էր վարվում տեղացի բնակիչների հետ և դրանով ուժեղացնում երկրում արդեն եղած՝ բյուզանդական իշխանությունների համար անբարենպաստ տրամադրությունները: Սեփական շահի և հարստության մասին նկատառումները նրա համար առաջնային էին, և այս նկատառումներից բխող որոշ գործողություններ արմատախիլ էին անում բնակիչների բարեկեցությունը: Լազերը լայն առևտուր էին վարում բյուզանդական ծովափի հետ և, փոխանակելով իրենց երկրի հումքը կենսական ապրանքներով, իրենց համար սնունդ էին ապահովում: Հովհաննեսը մտքին դրեց մտցնել մենաշնորհ և իր ձեռքը վերցնել ամբողջ առևտուրը: Հուստինիանոսից թախանձելով, նա ստացավ թույլտվություն և կառուցեց Պետրա քաղաքը, որը դարձրեց ներքին և արտաքին առևտրի կենտրոն: Ներմուծման և արտահանման իրավունքը վերցվեց բնակիչներից: Փակվելով Պետրայում իբրև ամրոցում, նա անձամբ տնօրինում էր բոլոր առևտրական գործարքները: Ներմուծվող ապրանքի ընդունումը և արտահանվող ապրանքների թողարկումը կատարում էր նույն ինքը. ընդ որում գները նույնպես նա էր սահմանում՝ իր սեփական հայեցողությամբ[3]:

---

[1] (Proc.)

[2] Ἰωάννης, ὁ Τζίβος ἐπικαλούμενος, Proc., II, p. 289 և 217.

[3] Proc., II, 15, p. 218.

Հովհաննեսի հալածանքները և կայսեր դերի հետզհետե նվազման հետ կապված մտավախությունը՝ որ այն ի վերջո կվերացվի, ստիպեց լազերին խնդրել պարսից արքայի հովանավորությունը: Լազերը գաղտնի պատվիրակություն են ուղարկել Պարսկաստան և հայտնել Խոսրովին իրենց մտադրությունը: Լազերի պատվիրակության շրջաններին պատմիչը հետևյալ ճառն է դնում՝ ճառ, որ արտասանվել է Խոսրովի առջև[1] (26):

«Ո՞վ ամենամեծ արքա, լազերին դու համարիր մարդիկ, որոնք մի ժամանակ որևէ պատճառով անջատվելով իրենց բարեկամներից, անցել են անծանոթ մարդկանց կողմը, բայց բախտի բերմամբ առավել մեծ հաճույքով վերադառնում են նրանց մոտ: Կոլխերն ի սկզբանե անտի դաշնակից են եղել պարսիկներին, օգնել են տվել նրանց և բազում փորձությունների [հանդիպել]: Այդ մասին մենք ունենք գրավոր շատ հուշարձաններ, որոնք ներկայումս պահվում են նաև քո արքունիքում: Սակայն հետագայում գուցե մեր նախահայրերի մեղքով, գուցե և ձեր կողմից անուշադրության մատնվելու հետևանքով (որովհետև այդ մասին ոչինչ վստահելի բան ասել չենք կարող), մենք դարձանք հռոմայեցիների դաշնակիցները: Այժմ մենք և Լազիկայի թագավորը հանձնվում ենք պարսիկներին և տալիս ենք մեր երկիրը, իսկ դուք արեք, ինչ որ կամենաք: Խնդրում ենք ձեզ, մեր հարցին մոտեցեք հետևյալ տեսանկյունից. եթե մենք հռոմայեցիներից որևէ վատություն չտեսած ապերախտաբար լքեցինք նրանց և ձեզ մոտ եկանք, իսկույն մերժեք մեր խնդիրքը, ենթադրելով, որ կոլխերը ձեզ էլ հավատարիմ չեն լինի (նախկին բարեկամության այդպիսի խախտումը ապացույց է այն բանի, թե ինչպես կպահպանեն այն ուրիշների հետ): Բայց եթե մենք անունով էինք միայն հռոմայեցիների բարեկամները, իսկ իրականում նրանց հավատարիմ ստրուկներ էինք և ճնշվում էինք մեզ բռնատիրողների կողմից, ապա այդ դեպքում դուք ընդունեցեք մեզ՝ ձեր նախկին դաշնակիցներին, տիրեցեք որպես ձեր ծառաների, որոնք ձեր նախկին բարեկամներն էին, ատեցեք մեր հարևան դաժան բռնատիրությունը, արդարությունը վերականգնելով, արդարություն, որի պաշտպանությունը պարսիկների բնածին գիծն է: Արդարությունը ոչ որի հանդեպ անարդարություն չգործելու մեջ չէ միայն, այլև ուրիշների կողմից անարդարության մատնվողներին պաշտպանելու մեջ: Արժե հիշատակել այն ամենի մասին, ինչ որ մենք կրեցինք անիծյալ հռոմայեցիների ձեռքից: Նրանք մեր թագավորի իշխանությունը ձևական դարձրին, փաստական իշխանությունն առնելով իրենց ձեռքը: Թագավորը վերածվել է ծառայի,

[1] Proc., II, 15, p. 219.

վախենում է իրեն հրամայող զորահրամանատարից: Մեր երկրում նրանք հաստատեցին մեծ թվով զորք, ոչ թե թշնամիներից այն պաշտպանելու համար (քանզի մեր հարևաններից և ոչ ոք, բացի հռոմայեցիներից, մեզ նեղություն չի պատճառել), այլ որպեսզի մեզ առնելով կապանքների մեջ, տիրանան մեր ունեցվածքին: Մտադիր լինելով հնարավորին չափ շուտ զրկել մեզ մեր ունեցվածքից, լսի՛ր, ո՜վ արքա, թե ինչպիսի խորամանկության դիմեցին նրանք: Ինչ որ իրենց պետք չէ՝ պարտադրում են լազերին գնել, իսկ ինչ որ Լազիկան ունի նրանց համար պիտանի, ձևականորեն գնում են, իսկ ինչ վերաբերում է գներին, այդ որոշում են տիրողները և ոչ մենք: Ահա այսպիսի ճանապարհով խլում են մեզանից, բացի սննդամթերքից, նաև ամբողջ ոսկին, առևտրի բարեհնչուն անվան տակ, բայց իրականում մեր հանդեպ դաժան բռնությամբ: Մեզ վրա տիրում է մի փերեզակ զորահրամանատար, որը հենվելով իր իշխանության վրա, մեր թշվառությունն իր համար ինչ-որ զբաղմունք է դարձրել: Ահա այս է ապստամբության ճշմարիտ պատճառը: Մենք այժմ կբացատրենք, թե ինչքան շահավետ է ձեզ համար լազերի խնդիրքն ընդունելը: Պարսից իշխանությանը դուք կմիացնեք հնագույն թագավորությունը, որով դուք առավել ևս կհզորացնեք ձեր իշխանությունը, բացի դրանից դուք մեր երկրի վրայով կկարողանաք կապվել հռոմայեցիների ծովի հետ, որտեղ նավեր շինելով, ով արքա, առանց դժվարության կնավարկեք մինչև Բյուզանդիոնի պալատը, որովհետև մեջտեղում ոչ մի արգելք չկա: Դրա վրա կարելի է ավելացնել հետևյալը. արդեն ձեզանից կախված կլինի, որ սահմանակից բարբարոսները ամեն տարի թալանեն հռոմայեցիների երկիրը, որովհետև դուք շատ լավ գիտեք, որ լազերի երկիրը Կովկասյան լեռների առաջ մի պատվար է: Արդ, արդարությունն այդ է հրամայում, օգուտն էլ առկա է, հետևաբար մեր առաջարկները մերժելը սխալ կլիներ»: Դեսպաններն այսքան ասացին:

[Խոսրովի երկրորդ արշավանքը՝ 541 թվական]: Լազ պատվիրակների ճառերը հաճելի էին Խոսրովին. դրանք համապատասխանում էին նրա՝ երբեմն պարսիկներին պատկանող Լազիկան հետ նվաճելու ծրագրերին: Պարսից արքան ընդունեց լազերի առաջարկը և սկսեց պատրաստվել արշավանքի: Բյուզանդական իշխանությունների ուշադրությունը շեղելու համար, Խոսրովը լուր տարածեց, իբր թե ուղևորվում է Իբերիա՝ տեղական գործերով, ինչպես և հոների՝ պարսկական տիրույթների վրա կատարած ասպատակումը հետ մղելու համար[1]: Խոսրովը մեծ զորքով հանդերձ

[1] Proc., II, 15.

անցավ Իբերիան և մուտք գործեց լազերի երկիրը: Ուղեկցողները լազ պատվիրակներ էին, որոնց օգնությամբ պարսիկները կարողացան հաղթահարել լեռնային անտառախիտ տեղանքով պայմանավորված բոլոր դժվարությունները: Նրանք ծառեր էին կտրում և դրանցով պատում էին հեղեղատներն ու ապառաժները. այսպես հարթելով ճանապարհը, նրանք դյուրացնում էին զորքի առաջխաղացումը:

Առանց դիմակայության հանդիպելու Խոսրովն անցավ երկրի խորքը: Լազերի թագավոր Գուպազը (Ոպսիտեսի զարմիկը) դուրս եկավ պարսկական զորքին ընդառաջ, հայտարարեց իրեն Խոսրովին հնազանդ և հանձնեց իր մայրաքաղաքը և ողջ Լազիկան նրա հովանավորության ներքո[1]:

Բյուզանդական զորքերը Հովհաննես Ցիբոսի հրամանատարությամբ տեղակայված էին Պետրայում: Խոսրովը նրանց դեմ մի ստորաբաժանում ուղարկեց, հրամայելով գրոհով վերցնել Պետրան: Զորաջոկատի պետ է նշանակվել Անիավեդեսը (Ἀνιαβέδης): Պետրա քաղաքը, երբեմնի աննշան մի ավան, Հուստինիանոսի օրոք Հովհաննեսի ջանքերով հույժ ամրացվեց և վերածվեց անառիկ ամրոցի: Այն գտնվում էր ծովափին. ցամաքի կողմից վեր էին խոյանում ուղղաբերձ ժայռերը[2], կապված միմյանց ամուր պարիսպներով: Անիավեդեսը մոտեցավ քաղաքին և պատրաստվում էր սանդուղքը պարսպին հենել: Բայց կայազորը, արտագրոհելով, անսպասելի հարվածով մեծ կորուստներ պատճառեց պարսկական զորաջոկատին և ստիպեց նրան նահանջել քաղաքից: Խոսրովը, զայրանալով, հրամայեց խաչել Անիավեդեսին այն բանի համար, որ նա, լինելով ռազմիկ, պարտություն կրեց առևտրական Հովհաննեսից: Այնուհետև պարսից արքան ինքն իր ամբողջ զորքով հանդերձ պաշարեց քաղաքը: Պարսկական զորքի բազմաթիվ խիզախ գրոհները ապարդյուն էին: Ուստի զորքը սկսեց կանոնավոր պաշարումը: Կայազորն արիաբար դիմակայում էր, բայց նրա համառությունը կոտրվեց Հովհաննեսի մահով: Հովհաննեսը, ծոծրակին վերք ստանալուց հետո մահացավ, և պաշարվածները հուսահատվեցին: Երբ պարսիկները սկսեցին ականներ փորել քաղաքի աշտարակների տակ, բնակիչները խելամիտ համարեցին բանակցություններ սկսել Խոսրովի հետ, դրանով իսկ քաղաքը անխուսափելի կործանումից փրկելու համար: Պարսից արքան նրանց կյանքի և ունեցվածքի անվտանգություն խոստացավ: Քաղաքի անկումից հետո նա խլեց

[1] **Proc.,** II, 17.

[2] **«Նրանցից և ստացել է քաղաքն իր անունը՝ Πέτρα». Proc., II, 17, p. 227:**

Հովհաննեսի անհամար հարստությունը, բայց ձեռք չավեց բնակչության ունեցվածքին: Քաղաքի ռազմական ուժերը միացան Խոսրովի զորքին[1]:

Այն ժամանակ, երբ Խոսրովը ռազմական գործողություններ էր վարում Լազիկայում, բյուզանդական զորքը գործում էր Հայաստանում և Միջագետքում և որոշ հաջողության էր հասել:

Սկսելով արշավանքը, Խոսրովը կոչ արեց հոներին, որպեսզի նրանք զբաղեցնեն Բյուզանդական Հայաստանում տեղակայված կայսերական զորքերին և թույլ չտան, որ հայտնի դառնա Խոսրովի նախաձեռնության և Լազիկայի իրադարձությունների մասին: Եվ հոները, իրոք, չհապաղեցին ներխուժել Հայաստան: Այստեղ, սակայն, նրանք ուժեղ հակահարված ստացան Վալերիանոսից՝ զորքերի հրամանատարից (ստրատեգոսից), որը հարձակվեց նրանց վրա, գլխովին ջախջախեց և գրեթե ամբողջությամբ ոչնչացրեց նրանց զորաջոկատը[2]:

Դրա հետ միաժամանակ հարավում՝ Միջագետքում գրոհում էր Բելիսարիոսը: 540 թ. Վիտտիգիսի հետ միասին ժամանելով Իտալիայից, նա ձմեռեց մայրաքաղաքում և 541 թ. գարնանը ուղևորվեց Արևելք: Այստեղ նա զորքերը չափազանց աննախիթար կացության մեջ գտավ: Կարգ ու կանոնն իսպառ բացակայում էին, զինվորների մեծ մասը չուներ զենք ու զրահ, Խոսրովի հաղթարշավն այնպիսի սարսափ հարուցեց, որ ժամանակակցի ասելով, «նրանք պարսիկների լոկ անունից էին դողում»[3]:

Զորավարի հզոր ձայնն ի մի բերեց բանակը, նրան ոգու կայտառություն ներշնչեց և վերածեց ցիրուցան եղած ուժերը մեկ միասնական զորքի, որը ի վիճակի էր բարձր պահել բյուզանդական զենքի պատիվը: Կենտրոնացնելով զորքերը, Բելիսարիոսը Դարայում ռազմական խորհրդի է հրավիրում բոլոր զորահրամանատարներին՝ առաջիկա գործողությունները քննարկելու և ծրագրելու համար:

Բելիսարիոսը տեղեկություն չուներ, թե ինչ է կատարվում Լազիկայում: Լրտեսները զեկուցեցին, որ Խոսրովը մի այլ երկրամասում (իր պետության ծայրամասում) զբաղված է հոների դեմ պատերազմով: Նրանց զեկույցները, ինչպես տեսանք, հիմնված էին ասեկոսեների վրա, որ միտումնավոր տարածում էին իրենք՝ պարսիկները: Այս զեկույցների ազդեցության ներքո խորհուրդը որոշեց գրոհ սկսել թշնամու տարածքի վրա: Զորքերը շարժվեցին Դարայից և վստահորեն ուղղվեցին Մծբին: Այստեղ էին

[1] Proc., II, 17.

[2] Proc., Anecd., II, 22-24.

[3] Proc., II, 16. p. 222.

գտնվում պարսկական պատկառելի ուժեր՝ Նավեդեսի (Ναβέδης)՝ պետական կարևոր պաշտոնյայի գլխավորությամբ[1], որ պատրաստ էին հետ մղելու բյուզանդական զորքերի հարձակումը: Այս պատճառով Բելիսարիոսը վտանգավոր համարեց մերձենալ քաղաքին և կանգ առավ դրանից ոչ հեռու: Բելիսարիոսի բանակի առաջապահ ջոկատները մի փոքր ավելի մոտեցան Մծբինին: Նավեդեսը հմտորեն օգտվեց նրանց անզգուշությունից և այնժամ, երբ նրանք զինաքափ վայելում էին անհոգ հանգիստը, դուրս եկավ քաղաքից և շեշտակի հարձակվեց նրանց վրա: Նրանք այնքան անզգույշ գտնվեցին, որ կռվի բռնվեցին և անհաջողության մատնվեցին, բայց Բելիսարիոսը ժամանակին կանխեց պարսիկների գրոհը և ջոկատը փրկեց գլխովին ոչնչացումից: Նավեդեսը, հետապնդվելով թշնամու զորքերից, նահանջեց և նորից փակվեց քաղաքում:

Բելիսարիոսը չպաշարեց քաղաքը, քանի որ հույս չուներ այն գրավելու: Նա որոշեց առաջ շարժվել և վնասել հակառակորդին իր իսկ տարածքում: Մծբինից մեկ օրվա ճանապարհի հեռավորության վրա գտնվում էր Սիսավրանոնը[2], մարդաշատ առաջապահ ամրոցը: Ընտիր հեծելազորի մի

[1] Ναβέδην στρατηγὸν...ὃς δὴ μετὰ γε τὸν Χοσρόην αὐτὸν δόξῃ τε καὶ τῷ ἄλλῳ ἀξιόματι πρῶτος ἐν Πέρσαις εἶναι δοκεῖ [Նավեդես զորավարը ... որը Խոսրովից հետո առաջինն էր համարվում պարսիկների մեջ փառքով և այլ պատվով]: [Առանձին թերթիկի վրա.] Պ. Լագարդն իրավամբ համադրում է Ναβέδης բառը հայերեն «նահապետ»-ի հետ, որն, իր կարծիքով, նշանակում է առհասարակ առաջնորդ. Gesam. Abh. 191: Justi-ն կապում է դրա հետ նաև Anahbedh – Ա. Մորդմանի թագավորի անունը Ալ-Բիրունիի մոտ (101, 23 (109), Namensbuch):

Համաձայն Պրոկոպիոսի, Նավեդեսը իր փառքով և պաշտոնով Խոսրովից հետո առաջինն է Պարսկաստանում: Պ. Լագարդը պնդում է, որ Պրոկոպիոսը Նավեդես բառը դիտում է ոչ իբրև անձնանուն: Պ. Լագարդն իրավացի չէ. նա հիմնվում է Պրոկոպիոսի՝ պաշտոնի մեկնաբանման վրա: Մինչդեռ դժվար թե Նավեդեսը Խոսրովից հետո առաջին պաշտոն զբաղեցներ: Բելիսարիոսը դիտավորությամբ չափազանցեց նրա արժանիքները, որպեսզի իր զորքը հետ պահի հետագա գրոհից, որը կարող էր տխուր հետևանքներ ունենալ. տե՛ս Proc., II, p. 229; **Дестунис**, II, p. 126 (27):

[2] [Մատիտով.] Սիսավրանոնի պաշարումը՝ 541 թ.: [Առանձին թերթիկի վրա.] Σισαυράνων. Σισαύριον Proc., Σισαρβάνων Theoph. Sim. B. 60, 17. Գտնվում էր Մծբինից հյուսիս-արևելք, լեռնոտ, բայց արգավանդ մի երկրում, որ կոչվում էր Հռոմեական դաշտ. ենթադրվում է, որ դա այժմյան Ռումեյլն է, Մծբինից դեպի Մոսուլ տանող ճանապարհին. Forbiger, Σισαύριον բառի ներքո, **Pauly**, R. Enc. VI, 1219. **Ritter**, Erdk. XI, p. 401, 402, 418, 430. cf. **Дестунис**, II, p. 130, прим. 3.

փոքր ջոկատ էր պաշտպանում քաղաքը՝ ազնվատոհմ պարսիկ Բլեխամեսի գլխավորությամբ[1]: Բյուզանդացիները պաշարեցին ամրոցը:

Առաջին գրոհը պարսիկները ետ մղեցին՝ մեծ վնաս հասցնելով հարձակվողներին: Բելիսարիոսը համոզվեց, որ քաղաքը դժվար է գրավել, բայց թիկունքում այսպիսի մի ամրություն թողնել ու առաջ շարժվելն էլ չափազանց վտանգավոր էր: Նա շարունակեց ամրոցի պաշարումը, իսկ սարակինոսների առաջնորդ Արեթասին հրամայեց իր ջոկատով հանդերձ ասպատակել Ասորիքը, ամայացնել թշնամու երկիրը և, հետախուզելով նրա ուժերը, վերադառնալ գլխավոր ռազմաճամբար: Սիսավրանոնի բնակիչները շուտով սկսեցին ընկճվել պաշարումից, քանի որ զգում էին պարենի պակասը: Իմանալով այդ մասին գերի պարսիկներից, Բելիսարիոսը նրանց առաջարկեց հանձնվել՝ [հետևյալ] պայմաններով .... (28): Առաջարկն ընդունվեց: Բելիսարիոսը տիրեց ամրոցին և հիմնահատակ քանդեց դրա պարիսպները: Քրիստոնյա բնակչությունն ազատ արձակվեց, իսկ Բլեխամեսը պարսիկների հետ միասին ուղարկվեց Բյուզանդիա:

Այն ժամանակ Արեթասը տեղափոխվեց Տիգրիսի այն կողմը և սրընթաց ասպատակումով անցավ արգավանդ և անպաշտպան երկրով մեկ, կողոպտելով այն առանց որևէ դիմակայության հանդիպելու: Սակայն նա չենթարկվեց Բելիսարիոսի հրամանին և չվերադարձավ նրա մոտ, վախենալով, որ վերջինս իրենից խլելու է հարուստ ռազմավարը:

Արեթասի հետ միասին չի վերադարձել նաև բյուզանդական մի այլ փոքր ջոկատ, որի հրամանատարը, խաբված լինելով Արեթասից, այլ ճանապարհով նահանջեց դեպի Բյուզանդիայի սահմանը:

Բելիսարիոսը, իրավիճակին անտեղյակ, անհանգստացած էր ջոկատի և Արեթասի ճակատագրով: Տագնապով սպասելով նրանց վերադարձին, զորքը որոշ ժամանակ հապաղեց Սիսավրանոնի մոտակայքում: Անսովոր լինելով Միջագետքի տապին, ռազմիկները վարակվում էին ծանր տենդով. զորքի մեկ երրորդ մասը, այս հիվանդությամբ ախտահարված, կիսամեռ վիճակում պառկած էր: Ի լրումն չարյաց, լիբանական զնդերը խնդրեցին, որ նրանց տուն արձակեն, որպեսզի կարողանան իրենց հողերը պաշտպանել սարակինոսների առաջնորդ Ալամունդարոսի սպասվող ասպատակումներից և կողոպուտից: Այս պարագային թշնամու տարածքում գտնվելը հույժ վտանգավոր էր դառնում: Բելիսարիոսը հրավիրեց ռազմական խորհուրդ, որը որոշում կայացրեց Դարա վերադառնալու մասին: Որոշումը կա-

---

[1] [Սատիրռով]. Justi = cf. Balosagan (?) 2) Βληοχάνης, p. 232, Βλιοχάνης, Proc., Bella Gothica II, p. 291; Βληοχάμης, Anecd., 2.

տարվեց, որից հետո Բելիսարիոսը, կայսեր պահանջով, վերադարձավ մայրաքաղաք:

Արշավանքի ապարդյունությունը Բյուզանդիայում աշխույժ բամբասանքներ առաջացրեց: Իրադրությունից անտեղյակ մարդիկ դրա համար մեղադրում էին հռչակավոր զորավարին: Հետագայում Պրոկոպիոսն ինքը, փոխելով իր վերաբերմունքը Բելիսարիոսի նկատմամբ, փոխեց և այս արշավանքի նկատմամբ իր տեսակետը[1]: Նա կարծում էր, որ Բելիսարիոսը պետք է անցներ Տիգրիսի մյուս ափը. այդ դեպքում նա առանց որևէ դիմադրության հանդիպելու ավարառության կենթարկեր ամբողջ Պարսկաստանն ընդհուպ մինչև Տիզբոն: Պրոկոպիոսը համոզնում է պնդել, որ Բելիսարիոսին՝ Պարսկաստանը հետագա խորանալուց հետ է պահել իր չափազանց կապվածությունը կնոջ հետ, որին նա չէր ուզում թողնել միայնակ: Պատմագիրը, բորբոքվելով, հավանաբար մոռացել է իր իսկ հայտնած փաստերի մասին, որ արդարացնում են Բելիսարիոսի գործողությունները: Ցավալի է, սակայն, որ պատմագիրն իրեն այնքան է վարկաբեկում, որ թույլ է տալիս զրպարտություն բարդել մի մարդու վրա, որն իր ժամանակի ռազմավարության հպարտությունն էր:

Խոսրովը, զբաղված լինելով Լազիկայում, ոչ մի պատկերացում չուներ իր բացակայությամբ հարավում կատարվող իրադարձությունների մասին: Պետրան արդեն գրավված էր, երբ նա իմացել է Միջագետքում՝ բյուզանդական զորքի ռազմական գործառնությունների մասին: Խոսրովն իսկույն թողնում է Լազիկան և զորքը տանում է Պարսկաստան: Պրոկոպիոսը հետագայում[2] անհիմն նախատում էր Բելիսարիոսին, որ նա չի կտրել պարսկական զորքի նահանջի ճանապարհը:

[Խոսրովի երրորդ արշավանքը 542 թվական]: Բարեհաջող վերադառնալով Լազիկայից, Խոսրովը հաջորդ տարվա գարնանն իսկ կրկին արշավանք է սկսում, թվում է, թե Արեթասի պատճառած ավերումների համար Բյուզանդիայից վրեժ լուծելու նպատակով: Ըստ իր արդյունքի, սակայն, այս արշավը լոկ ցուցադրական և հետախուզական նշանակություն ունեցավ: Պարսկական զորքը շարժվում էր ճիշտ այն ճանապարհով, որն ընտրվել էր առաջին արշավանքի համար: Խոսրովն արագորեն բարձրացավ հյուսիս՝ Եփրատի արևմտյան ափով: Սերգիոպոլիսի մոտակայքում նրա մոտ եկավ Կանդիդոս եպիսկոպոսը, ներողություն խնդրելով այն բանի համար, որ նա չի հասցրել կատարել իր խոստումը՝

---

[1] Proc., Anecd. II, 22.

[2] Ibid.

Սուրոնի բնակիչների փրկագինը տալու վերաբերյալ: Այն կատարելու համար, նա առաջարկեց Խոսրովին վերցնել Սերգիոպոլիսի տաճարի գանձերը: Դրանից դժգոհ, Խոսրովը, քաղաքի ունեցվածքը ստուգելու պատրվակով մարդիկ է ուղարկում քաղաք՝ այն գրավելու գաղտնի հանձնարարությամբ: Բնակիչները, զգուշացված լինելով պարսիկների մտադրության մասին, նրանց քաղաք չթողեցին: Քաղաքը բռնի ուժով գրավելու մի քանի անհաջող փորձերից հետո Խոսրովը շարունակեց իր ուղին և անցավ Եփրատեսիան:

Երկրները, որոնց տարածքով արշավում էր զորքը, արդեն հյուծված էին առաջին արշավանքի շորքումներով, ուստի Խոսրովը նրանց ոչ մի վնաս չպատճառեց: Նա ավելի շատ ձգտում էր դեպի հարուստ Պաղեստինը. նրան հրապուրում էին Երուսաղեմի առասպելական գանձերի մասին զրույցները: Երկրամասում գտնվող բյուզանդական զորավարները սարսափից կողպվեցին իրենց ամրոցներում և Խոսրովին հակազդելու մասին չէին էլ մտածում: Բելիսարիոսին, որն ինչպես տեսանք, դրանից առաջ մայրաքաղաք կանչվեց, Հուստինիանոսը կրկին ուղարկեց պարսիկների դեմ: Կայսերական ճեպընթաց ձիերով, որոնք կոչվում էին «վերեդներ» (βερέδας)[1] նա շտապով հասավ Եփրատեսիա, հավաքեց ռազմական ուժերը և ճամբարեց Եվրոպոսում: Բելիսարիոսի հայտնվելուն պես Խոսրովը դադարեցրեց իր առաջխաղացումը: Նա բյուզանդացի զորավարի մոտ ուղարկեց Վարդան անունով արքունական քարտուղարներից մեկին[2], որը հայտնի էր իբրև նրբամիտ մարդ, և նրա միջոցով դժգոհություն հայտնեց, թե Հուստինիանոսը տակավին հապաղում է վավերացնել կնքված հաշտության պայմանները: Պրոկոպիոսի հավաստմամբ, սակայն, իրականում Վարդանի գաղտնի առաքելությունը կայանում էր զորավարի անձի և ուժերի հետախուզման մեջ:

Բելիսարիոսը շատ սրամիտ և խորամանկ կերպով վարվեց Վարդանի նկատմամբ: Նա առանձնացրեց 6000 ընտիր հաղթանդամ ռազմիկ և որս անելու պատրվակով նրանց հետ հեռացավ գլխավոր զորաճամբարից: Միաժամանակ նրա կարգադրությամբ հայ Ակակիոսը, Արդիոսի որդին, որը ժամանակին ծառայում էր արքունիքում սիլենտիարիոսի պաշտոնում[3], իսկ այդ պահին հայկական գնդի զորավարն էր, 1000 հեծյալով հանդերձ

---

[1] Տե՛ս Lagarde, Gesammte Abh., p. 76 n.1.

[2] Βαρδάνην ὄνομα – Վարդան, II, 20, p. 243: Անունից դատելով, քարտուղարը ծագումով հայ էր:

[3] [Proc., p. 243].

անցել է Եփրատի մյուս ափը և այնտեղ սպառնական դիրք գրավել, իբր Խոսրովի նահանջի դեպքում ճանապարհը փակելու մտադրությամբ: Պարսկական պատվիրակին Բելիսարիոսն ընդունեց անայի տեղում խփած հասարակ վրանում, շրջապատված պահազորով, որը կազմված էր հաղթանդամ ռազմիկներից՝ թրակացիներից, իլլիրիացիներից, գոթերից, էրուլներից, վանդալներից և մավրուսիոսներից, և խոսեց նրա հետ արժանապատիվ լեզվով՝ առանց որևէ պատճառի հաշտությունը խախտած Խոսրովի հայտարարությունների անհիմն լինելու մասին: Այս հանգամանքները ցանկալի ազդեցություն գործեցին պարսից արքայի պատվիրակի վրա: Վերադառնալով Խոսրովի մոտ, նա զեկուցեց, որ խոսել է մի այնպիսի զորավարի հետ, որը բոլոր մարդկանցից արի և իմաստուն է, որ ինքը զինվորներ է տեսել, որոնց նման երբեք չի տեսել, որ տեսարանն ու կարգը հիացրեց իրեն և [պարսից արքան] Բելիսարիոսին ճակատամարտում հավասարվել չի կարող, այն պատճառով, որ ջախջախելով Բելիսարիոսին, արքան հաղթելու է միմիայն կայսեր ստրուկին, իսկ պարտվելով նրանից, փառազրկության կմատնի և թագավորությունը, և պարսից ժողովուրդը, որ հռոմայեցիները, պարտվելու դեպքում, հեշտությամբ ապաստան կգտնեն իրենց երկրում և իրենց ամրոցներում, բայց եթե դժբախտություն պատահի պարսիկներին, չի լինելու և մեկը, որ [պարտության] լուրը հասցնի պարսկական աշխարհ»[1]:

Խոսրովը ենթարկվեց Վարդանի հորդորներին և իսկույն անցավ Եփրատի մյուս ափը: Նա պատվիրակներ ուղարկեց Բելիսարիոսի մոտ հայտարարելու, որ ինքը հետ է քաշում զորքերը այն պայմանով, որ Բելիսարիոսն արագացնի խաղաղության հաստատումը: Ի պատասխան դրա Խոսրովը Բելիսարիոսից պատանդներ ստացավ և սկսեց նահանջել: Խոսրովի արշավանքի ավարտն ընդհանուր առմամբ շահեկան եղավ Բյուզանդիայի համար:

Բելիսարիոսի ուժերն անհամեմատ փոքր էին, քան Խոսրովի հոյակապ բանակը: Չնայած դրան, պարսից արքան խուսափեց ճակատամարտից և հեռացավ առանց ընդհարումների: Այս հանգամանքը պատմագիրները Բելիսարիոսի ճարպիկ ռազմավարությանն են վերագրում: Պրոկոպիոսն ասում է, որ Խոսրովը նահանջեց իբր խաղաղասիրությունից դրդված, բայց իրականում նա փախուստի է դիմել, վախենալով Բելիսարիոսի քաջավոր կամ արի լինելուց, կամ էլ խաբված նրա խարդախությամբ: Առանց մեծ զորավարի անձնական հատկությունների նշանակությունը նսեմացնելու և

[1] Proc., II, 21, p. 245.

նրա հանճարին պատշաճը հատուցելով հանդերձ կարելի է, այնուամենայնիվ, ենթադրել, որ հզոր արքայի անակնկալ նահանջում, ըստ երևույթին, ոչ պակաս դեր են խաղացել ժանտախտի համաճարակի մասին լուրերը՝ ժանտախտ, որը, աղբյուրների հանուր համաձայնությամբ, բռնկվել է նույն 542 թվականին[1]: Այն սկսվեց Եգիպտոսում և հետզհետե տարածվեց և այլ երկրներ: Պաղեստինը որպես Եգիպտոսին հարևան երկիր, առաջինը զոհ դարձավ մեծ համաճարակի: Անկասկած, այս հանգամանքն է, որ հետ պահեց Խոսրովին Պաղեստինն ասպատակելու գայթակղությունից[2]:

---

[1] Ըստ Եվագրիոսի (Hist. Eccl. IV, 29) այն բռնկվել է Անտիոքի՝ պարսիկների կողմից նվաճվելուց (540 թ.) երկու տարի անց. Պրոկոպիոսը նույնպես վերագրում է դրա հայտնվելը այդ ժամանակին, պատմելով դրա մասին անմիջապես Խոսրովի արշավանքից հետո:

[2] Խոսրովի նահանջի՝ ժանտախտից կախված լինելու մասին ենթադրությունը պատկանում է Գ. Ռոուլինսոնին (The seventh monarchy, p. 401): Այն պաշտպանվում է նաև Շպիգելի կողմից (Eran. Alt. III, 434): Դեստունիսը կարծում է, որ Ռոուլինսոնի ենթադրությունը քիչ հավանական է: Սակայն նրա առարկությունը, որի համաձայն ժանտախտը տարածվեց և թափանցեց Պարսկաստան արդեն Խոսրովի նահանջից հետո, և սկսվեց միայն նրա՝ Ադերբիգանոն [Ատրպատական] անցնելու ժամանակ, ըստ էության չի հերքում Գ. Ռոուլինսոնի ենթադրությունը: Կարևորն այն չէ, թե երբ է ժանտախտը տարածվել Պարսկաստանում, այլ՝ դրա հայտնվելու պահը որպես այդպիսին: Իսկ պատմագիրներն այն վերագրում են 542 թ., և դա կասկածից վեր է [ըստ Clinton, F.R. I, 778, 542 թ. ամռանը] : Այդպիսի համաշխարհային աղետի լուրը կարող էր ստիպել Խոսրովին վերադառնալ իր երկիրը՝ այն Պարսկաստան ներմուծելու դեմ կանխարգելիչ միջոցներ ձեռնարկելու համար: Այս ոգով և արտահայտվում է Ռոուլինսոնը. Chosroës may well have hesitated to confront this terrible foe. He did not ultimately escape it; but he might hope to do so, and it would clearly have been the height of imprudence to have carried out his intention of invading of Palestine when the plague was known to be raging there. [«Խոսրովն իրավամբ չէր համարձակվում հանդիպել այդ սարսափելի աղետին: Ի վերջո, նա չկարողացավ խուսափել դրանից. բայց նա, թերևս, այդպիսի հույս ուներ. և անշուշտ, կատարյալ անմտություն կլիներ, եթե նա շարունակեր տածել իր՝ Պաղեստին ներխուժելու մտադրությունն այն ժամանակ, երբ հայտնի եղավ, որ ժանտախտն այնտեղ արդեն մոլեգնում է »]:

Առավել ուշադրության արժանի է Դեստունիսի այլ առարկությունը: Հայտնի է, որ Պրոկոպիոսը Anecd. («Գաղտնի պատմության») մեջ ամեն կերպ աշխատում է նսեմացնել Բելիսարիոսի վաստակը, մեղադրելով նրան, ի թիվս այլոց, նրանում, որ նա երկչոտության պատճառով չհետապնդեց Խոսրովին. մինչդեռ նա Բելիսարիոսի դեմ կործանարար կռվան կուներնար, եթե Խոսրովի ամոթալի փախուստի պատճառը վերագրեր ժանտախտին և դրանով իսկ հերոսին պսակազերծ աներ: Դրանում Դեստունիսը ապացույց է տեսնում այն բանի, որ ոչ մի ժանտախտ այդ ժամանակ չի եղել: Բայց նրա եզրակացությունը սխալ է: Ժանտախտի

[Պատերազմի չորրորդ տարին, 543 թ., Հայաստանում]: Հաջորդ տարին պատերազմական գործողությունները վերսկսվեցին, տեղափոխվելով Միջագետքից Հայաստան: Խոսրովը Տիզբոնից ուղևորվեց Աղերբիգանոն, այն տեղանքը, որտեղ գտնվում էր պարսիկների հռչակավոր սրբավայրը՝ մեծ ատրուշանը (պիրիոնը) անմարելի հավերժական հրով: Այստեղ նա պատրաստություններ է տեսնում Պարսկական Հայաստանի վրայով Բյուզանդիա արշավելու համար: Նավեղեսը՝ Միջագետքի զորքի հրամանատարը, նույնպես տեղափոխվեց Հայաստան: Ռազմաբեմի փոփոխումն ու զինուժերի տեղափոխումը հարավից դեպի հյուսիս բացատրվում է բյուզանդամետ շարժման առաջացմամբ: Այն ժամանակից, երբ կայսերական կառավարմամբ դժգոհ հայերն անցան պարսիկների կողմը, արդեն երեք տարի էր անցել, բայց հայերի դրությունը չլավացավ և սպասելիքները չարդարացվեցին: Այդ միջոցին պարսիկները չկարողացան կոտրել բյուզանդացիների հզորությունը և հայերին որևէ էական օգնտ չբերեցին: Հուսահատված իրենց սպասելիքներում, հայերը, Խոսրովի երրորդ արշավանքից հետո, որն ավարտվեց նահանջով, լքեցին պարսիկներին և անցան իրենց նախկին թշնամու կողմը:

Նրանց միջև հաշտություն կայացավ, որից հետո [հայերի ներկայացուցիչները] Վասակի՝ [Հովհաննես Արշակունու անհրորդու] հետ միասին գնացին մայրաքաղաք՝ կայսեր մոտ: Այդ ժամանակներին, հավանաբար, վերագրելի է և Արտավան Արշակունու հեռանալը Հայաստանից՝ Արտավան, որը հետագայում նշմարվեց Բյուզանդիոնում (29):

Խոսրովի ակնկալվող հարձակումը հետ մղելու նպատակով Հուստինիանոսը նրա մոտ սուրհանդակ ուղարկեց տեղեկացնելու, որ շուտով պատվիրակներ են ժամանելու հաշտության բանակցություններ վարելու համար: Պատվիրակները, սակայն, հապաղեցին ճանապարհին՝ նրանցից մեկի հիվանդության պատճառով: Այդ ժամանակ ժանտախտը հասցրեց ներխուժել Պարսկաստան. այս հանգամանքն ավելի էր տրամադրում Խոսրովին դեպի հաշտություն: Նա չսպասեց պատվիրակներին. սարսափելով ժանտախտից, առավ իր ամբողջ զորքը և հետ քաշվեց Ասորիք, որը դեռ վարակված չէր ահավոր հիվանդությամբ: Բանակցություններ վարելը վստահվեց Նավեղեսին, Պարսկահայաստանի զորահրամանատարին (30):

Հաշտության կնքումն արագացնելու համար Նավեղեսը դիմեց Դվինի Հայոց կաթողիկոսի (31) միջնորդության և նրան ուղարկեց Վալերիանոսի՝

---

542 թ. հայտնվելն անառարկելի է: Թեոփանեսը 542 թ. է վերագրում դրա՝ նույնիսկ Բյուզանդիայում հայտնվելը:

Բյուզանդական Հայաստանի զորահրամանատարի մոտ: Կաթողիկոսն իր եղբոր ուղեկցությամբ ժամանեց Վալերիանոսի մոտ և խորհուրդ տվեց շտապել՝ հաշտությունը կնքելու համար: Նշելով իր բարյացակամությունը և իր՝ որպես քրիստոնյա եկեղեցու առաջնորդի՝ կայսրին նվիրվածությունը, բայց միաժամանակ չհերքելով և իր՝ Խոսրովի վրա ունեցած ազդեցությունը, կաթողիկոսը հավաստիացնում էր, որ եթե պատվիրակներն իր հետ ուղևորվեն Պարսկաստան, ապա սպասելի է, որ հաշտությունը կկնքվի Բյուզանդիոնի համար ամենանպաստավոր պայմաններով: Կաթողիկոսի եղբայրը, սակայն, տեսակցություն ունեցավ Վալերիանոսի հետ և քաքուն փոխանցեց նրան, որ Խոսրովի խաղաղամտությունը ներկայումս բացատրվում է դժվարին կացությամբ, որում նա հայտնվել է գահին տենչացող որդու խռովության[1], ինչպես և ժանտախտի պատճառով, որը հասել և կապել է նրան և ամբողջ բանակը:

Իրադարձություններին Հայոց կաթողիկոսի և նրա եղբոր խառնվելու փաստն ավելի հավանական է դարձնում վերը հայտնած կռահումն այն մասին, որ սպառնացող ռազմական գործողությունները կապված էին հայկական գործերի հետ: Կաթողիկոսը, որպես քրիստոնյա եկեղեցու առաջնորդ, առավելապես ապրում էր խաղաղության շնորհիվ և ջանադրաբար դրա մասին էր հոգում: Բայց նրա եղբայրը, մեզ անհայտ, վերջերս Խոսրովից դեպի Հուստինիանոսը հայերին նորից վանող հանգամանքների բերումով, գործում էր հակառակ ուղղությամբ:

Վալերիանոսը կաթողիկոսին հետ ուղարկեց, խոստանալով, որ ինքը կատարելու է նրա ցանկությունը և շուտով պատվիրակներ է ուղարկելու: Իրականում, սակայն, նա ձգձգում էր պատվիրակության առաքումը և Հուստինիանոսին զեկուցեց այն բոլորը, ինչ իմացել էր Խոսրովի ճգնաժամի մասին: Ի պատասխան զեկույցի հետևեց Հուստինիանոսի հրամանը՝ դադարեցնել բանակցությունը և գրոհել թշնամու վրա:

Արևելյան բանակի զորքերը գրավոր հրահանգներ են ստացել իսկույն զորահավաք կատարելու և դեպի թշնամու սահմանները շարժվելու մասին՝ Պարսկահայաստան ներխուժելու համար: Վալերիանոսն իր ուժերը կենտրոնացրեց Թեոդոսուպոլսից ոչ հեռու, իր հետ ունենալով նաև Նարսեհ (Կամսարականին), որը հայերից և էրուլներից կազմված մի զորաջոկատի հրամանատար էր:

Magister militum per Orientem, արևելյան բանակի զորահրամանատար Մարտինոսը, որն այս պաշտոնին էր նշանակված Բելիսարիոսի՝ հետ

---

[1] Խոսքը Անատոզադի ապստամբության մասին է, որը, սակայն, թվագրվում է 551 թվականով:

կանչվելուց հետո, զորքերը շարժեց դեպի Կիթարիզոն ամրոցը, որը Թեոդոսուպոլիսից չորս օրվա հեռավորության վրա էր, և որի կայազորի պետը Նարսեհի եղբայրն էր՝ Իսահակը, և ճամբարեց այստեղ: Այդտեղ են եկել նաև Ակակիոսի որդի Ադոլիոսը, Լազիկայի նախկին կառավարիչ Պետրոսը և այլ առաջնորդներ:

Էրուլների զնդերը Ֆիլեմութի և Բերոսի հրամանատարությամբ տեղակայվեցին Խորզանենեի գյուղերում, Կիթարիզոնից ոչ հեռու: Եվ վերջապես, կայսեր եղբայրը՝ Հուստոսը, Գուրգենի որդի Պերանիոսի և այլ զորավարների հետ միասին մտան Մարտիրոպոլիսի շրջանը և կանգ առան Փասոն ամրոցի մոտակայքում:

Բոլոր զորքերը միասին կազմում էին 30.000 մարդ: Հրամանատարների միջև առանձնապես համախոհություն չէր նկատվում. գրոհի ծրագիրը քննարկելու համար նրանք ռազմական խորհրդի չհավաքվեցին, այլ իրենց մարդկանց միջոցով էին շփվում: Ընդհանուր թիմի բացակայությունն ու հրամանատարների՝ միմյանցից անջատ գործելու ձգտումը կործանարար եղավ պատերազմի ընթացքի և արդյունքների համար: Պետրոսը, որ կանգնած էր Կիթարիզոնի մոտ, սեփական նախաձեռնությամբ սկսեց գրոհն ու ներխուժեց պարսիկների երկիրը առանց մյուս զորավարներին նախազգուշացնելու: Նրա օրինակը գայթակղեց էրուլներին: Նրանցից հետո շարժվեց Մարտինոսը, իսկ Վալերիանոսը հետևեց նրան: Հակառակորդի տարածքում նրանք համախմբվեցին և ռազմական շարքերով ուղևորվեցին դեպի Դվին, Պարսկահայաստանի աթոռանիստը, հարուստ և մարդաշատ քաղաքը: Այստեղ կանգնած էր Նավեղեսը՝ չնչին զորքով. գլխավոր ուժերը Խոսրովը տարել է Ասորիք: Լսելով թշնամու գրոհի մասին, նա թողեց Դվինը և իր զորքերի հետ միասին հետ քաշվեց Անգլոն գյուղը (32): Այն գտնվում էր զահավեժ և դժվարանցանելի լեռան ստորոտին: Լեռան լանջի վրա վեր էր խոյանում նույնանուն անառիկ մի ամրոց: Նավեղեսն ուներ ընդամենը 4000 մարդ. գլխավորապես նա իր հույսը դրեց իր դիրքի անմատչելիության վրա: Մեծաքեկորներով և սայլերով նա փակեց դեպի գյուղ տանող ուղիները, այն ավելի անխոցելի դարձնելու համար. զորքի առաջին շարքի առջև խրամատ փորել տվեց, իսկ հյուղակներում դարան դրեց հետևակը[1]:

[1] [**Procop.**, II, 25].

1. Նկատի ունի նորա պահակը: - Էջ 537:

2. Այստեղ և այնուհետև Հռոմ, Հռոմեական կայսրություն, հռոմայեցիներ անվանումները պետք է հասկանալ Բյուզանդիա, Բյուզանդական կայսրություն, բյուզանդացիներ: - Էջ 537:

3. Նկատի ունի 363 թ. կնքված «Ամոթալի» պայմանագիրը: - էջ 538:

4. Ն. Ադոնցի առաջարկած թարգմանության տարբերակներն են՝ ա. «նեղ սկզբում», բ. «Կովկասյան լեռների սկզբի նեղ զտում»: Անշուշտ, խոսքը Դերբենդի մասին է: - Էջ 539:

5. Ն. Ադոնցն առաջարկում է նաև «բաժանվում» տարբերակը: - Էջ 539:

6. Ն. Ադոնցն առաջարկում է նաև «անհայտ» տարբերակը: - Էջ 539:

7. Հեղինակային թարգմանությունը բառացի չէ: - Էջ 540:

8. Ամրոցի անվանումը տարբեր հեղինակների կողմից տարբեր կերպ է արտասանվում. Ἰουρείααχ (Const. Porph.), Βιραπαράχ (Jo. Lydus): - Էջ 541:

9. «Սատրապական համազգեստ» - Բյուզանդական կայսրության կազմում գտնվող հարավ-արևմտյան հայկական նահանգներն անվանվում էին սատրա-

պություններ (թվով հինգ), իսկ նահանգի կառավարիչ-նախարարը՝ սատրապ: Պրոկոպիոս Կեսարացին արժեքավոր ու եզակի վկայություն ունի սատրապներին տրվող նշանակների ու համազգեստի մասին. «Ինչ վերաբերում է Մյուս Հայքին, որ գտնվում է Եփրատ գետից այս կողմ և տարածվում է մինչև Ամիդ քաղաքը, այնտեղ իշխում էին հինգ հայ սատրապներ, որոնց իշխանությունը ժառանգական էր և ցմահ: Նրանք հռոմայեցիների կայսրից ստանում էին միմիայն նշանակներ: ... Դա բրդյա քղամիդ էր, սակայն ոչ թե ոչխարի բրդից, այլ ծովից հավաքված: Այդ բուրդը բուսնում է պիննոս կոչված ծովային կենդանիների վրա: Ծիրանիի այն մասը, որի վրա սովորաբար զգվում էր բեհեզը, ոսկուց էր: Քղամիդի վրա ամրացված էր լինում ոսկե ճարմանդ՝ մեջտեղում թանկագին քար: Այդ ճարմանդից ոսկե շղթայով կախվում էր երեք հակինթ: [Քղամիդից բացի] կար նաև մետաքսյա պատմուճան, ամենուրեք պաճուճված ոսկե զարդերով, որոնց պլումիա են անվանում, և մինչև ծունկը հասնող կարմիր կոշիկներ, որոնք սովորաբար հագնում են հռոմայեցիների և պարսից թագավորները» (տե՛ս «Օտար աղբյուրները Հայաստանի և հայերի մասին». 5. Բյուզանդական աղբյուրներ. Ա. Պրոկոպիոս Կեսարացի, թարգմանություն բնագրից, առաջաբան և ծանոթագրություններ Հրաչ Բարթիկյանի, Երևան, 1967, էջ 190-191): Սատրապական Հայաստանի մասին մանրամասն տե՛ս **Н. Адонц, Армения в эпоху Юстиниана. Политическое состояние на основе нахарарского строя, СПб., 1908, стр. 28-45**: - էջ 544:

10. Ն. Ադոնցի բնագրում՝ էջի ներքևի մասում անկյունագծով առկա է հետևյալ նշումը. «**Arzen՝ Արզանենե, ինքնավար սատր.**»: - էջ 548, ծան. 2:

11. Նախադասության շարունակությունը ջնջված է հեղինակի կողմից: - էջ 559:

12. Պրոկոպիոսի երկում. ἐς χωρίον μὲν ᾿Ατταχᾶς ἦλθον: - էջ 559, ծան. 2:

13. Ծանոթագրությանը կից Ն. Ադոնցը մատիտով ավելացրել է՝ «Գուցե Բոլոսի՝ Իսակիոս [Կամսարականի] օրոք գրավման տարբերակն է, ինչպես հայտնում է Պրոկոպիոսը»: - էջ 560, ծան. 1:

14. Այդ բարեփոխումների մասին մանրամասն տե՛ս Ն. Ադոնցի **«Армения в эпоху Юстиниана»** մենագրության 6-8-րդ գլուխները: - էջ 564:

15. Փառանգիոնի ոսկու հանքերի մասին տե՛ս **Ն. Ադոնց**, Հայաստանի ոսկեհանքը (**Ն. Ադոնց**, Երկեր հինգ հատորով, հատ. Ա, Պատմագիտական ուսումնասիրություններ, աշխատասիրությամբ՝ Պ. Հ. Հովհաննիսյանի, Երևան, 2006, էջ 141-155): - էջ 564:

16. Խոսքը վերաբերում է 481-484 թթ. հակապարսկական ապստամբության առաջնորդ Վահան Մամիկոնյանին: - էջ 564:

17. Հաջորդող նախադասությունը ջնջված է, սակայն հնարավոր է ընթերցել՝ «Պրոկոպիոսը նրանց անվանում է տոհմական տիտղոսով՝ ʼΑσπετιανοί, ձևի փոխարեն, ըստ նրանց ժառանգական «ասպետ» պաշտոնի»: - էջ 566:

18. Նկատի ունի Հայոց Արշակ III թագավորին (378-389): - էջ 569:

19. Այդ ակտը հավանաբար տեղի է ունեցել 389 թվականին: - էջ 569:

20. Խոսքը Թեոդոսիոս I Մեծի (379-395) մասին է: - էջ 569:

21. Բնագրի տվյալ էջի լուսանցքում Ն. Ադոնցը տվել է Բյուզանդական Հայաստանի կառավարիչների հետևյալ ցանկը՝

1. Համազասպ [մինչև 536 թվականը]
2. Ակակիոս 536-538
3. Սիտտաս 538
4. Բուզես 539

Նույնը կրկնվում է նաև ստորին լուսանցքում: - էջ 569, ծան. 2:

22. Ինչպես ակներև է Ն. Ադոնցի թղթերի նյութերից, նրան շարունակել է հետաքրքրել հայ Արշակունիների ճակատագիրը՝ Հայաստանի առաջին բաժանումից (387) և պետականության անկումից (428) հետո: Պատմաբանը ձեռնարկել է «Վերջին հայ Արշակունիների ճակատագիրը» խորագիրը կրող հատուկ ուսումնասիրության ստեղծմանը, որից ցավոք թղթոնում առկա է ընդամենը մեկ էջ (տե՛ս Համազգայինի Բեյրութի գրական պահոց, պրոֆ. Ն. Ադոնցի ֆոնդ, պահարան Ժ, զգրոց Ա, թղթածրար 8): Հնարավոր չէ անգամ ենթադրել, թե ի՞նչ ծավալ է ունեցել անհետացած այդ աշխատությունը, պատմաբանը կարողացե՞լ է կատարել իր առջև դրված խնդիրը, թե ոչ: Միայն հայտնի է, որ ժամանակին (1929) նա հատուկ ուսումնասիրություն է նվիրել վերջին Արշակունիներից Արտավանին (տե՛ս էջ 619, ծան. 29): Բացի այդ, Ն. Ադոնցի թղթոնում առկա է «Հուստինիանոսի ժամանակաշրջանի նշանավոր հայերը» ռուսերեն անավարտ մի աշխատանք (ձեռագիր, 70 էջ) բաղկացած հետևյալ բաժիններից՝

1. Արտավազդ Մամիկոնյան
2. Արտավան Արշակունի
3. 548 թ. դավադրությունը
4. Ներսեհ և Իսահակ Կամսարականներ

5. Վարազտիրոց [Բագրատունի]
6. Հայկական հեծելազորը Իտալիայում
7. Իսահակ Կամսարականն ու նրա բանակը
8. Գլակ Հայ
9. **Հովհաննես Արշակունի**

(տե՛ս Համազգայինի Բեյրութի գրական պահոց, պրոֆ. Ն. Աղոնցի ֆոնդ, պահարան Թ, զզրոց Ա, թղթածրար 8):

Ընդգծումները անմիջապես աղերսվում են վերջին Արշակունիներին և հետևաբար կարող էին մաս կազմել ցավալիորեն կորսված «Վերջին հայ Արշակունիների ճակատագիրը» աշխատության: - Էջ 571:

23. Սույն և ստորև բերվող մյուս հատվածները տրվում են Հր. Բարթիկյանի թարգմանությամբ (տե՛ս **Պրոկոպիոս Կեսարացի,** էջ 83-85): - Էջ 573, ծան. 1:

24. Նույնը՝ էական տարբերություններով, լայն թողնված լուսանցքի վրա՝

«Խոսրովն իր հերթին գերիներ է տանում: Կարբեի և Կոստանդինեի բնակիչները զգալի դրամ բերեցին: Հասնելով Դարա, նա համալրեց գումարը: Հռոմեացիները Մարտինոսի հրամանատարությամբ եռանդուն դիմակայում էին: Խոսրովը, չհուսալով հասնել հաջողության, բանակցություններ սկսեց պաշարվածների հետ, ստացավ 1000 լիտր արծաթ և հեռացավ իր երկիրը: Ամառն արդեն վերջանում էր, այսինքն՝ 540 թվականի» (Proc., Pers. II, 13):

Սուրոնի գերիների համար 200 [լիտր] ոսկի,
Հիերապոլիս՝ 2000 [լիտր] արծաթ,
Վերիա՝ 2000 լիտր արծաթ,
Անտիոք՝ կողոպտված է (10.000),
Խաղաղության համար՝ 5000 լիտր ոսկի,
Ապամեա՝ կողոպտված է,
Քաղկիս՝ 200 ոսկի,
Եդեսիա՝ 200 ոսկի,
Դարա՝ 1000 ոսկի:

---

Ընդամենը՝
5600 լիտր ոսկի
5000 լիտր արծաթ
10.000 (Անտիոք): - Էջ 577:

25. Շարադրանքն այստեղ ընդհատվում է: - Էջ 577:

26. Ն. Ադոնցի բնագրում ճառը բացակայում է: Տրվում է ըստ հղման (թարգմանությունը՝ Հր. Բարթիկյանի, տե՛ս **Պրոկոպիոս Կեսարացի**, էջ 116-118): - էջ 579:

27. Մատիտով ավելացված է՝ «nabed» - նահապետ, nahadar - նախարար»: - էջ 583, ծան. 1:

28. Շարադրանքն ընդհատվում է և պայմաններին վերաբերող հատվածը չի տրվում: - էջ 584:

29. Ն. Ադոնցը Արտավան Արշակունու հետագա գործունեությանն է նվիրել հատուկ ուսումնասիրություն (տե՛ս **Ն. Ադոնց**, Երկեր, հատ. Ա, էջ 198-217): - էջ 589:

30. Ստորին լուսանցքում՝ մատիտով դարձյալ շեշտվում է նույն նախադասությունը. «Նավեղեսը Դվինում աթոռանիստ ունեցող Հայոց կաթողիկոսին ուղարկեց Վալերիանոսի՝ Բյուզանդական Հայաստանի զորահրամանատարի մոտ»: - էջ 589:

31. Այդ ժամանակ Հայոց կաթողիկոսն էր Քրիստափոր Ա Տիրառիջցին (539-545): - էջ 589:

32. Խոսքը հավանաբար Ծաղկոտն գավառի Անգղ գյուղաքաղաքի մասին է: - էջ 591: